Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

I օր.

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 7 (38)

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուս. պրոպագանդայի,
ագիտացիայի յեվ մամուլի բաժին

9-ԽԷ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 7 (38)

ՀԿ (բ) ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պատ. խմբագիր՝ Բ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչներ՝ Ա. ՅԵՐԻՑՅԱՆ և
ԱՆԴ. ԲԱԼԱԲԱՆՅԱՆ
Գլավլիտի լիազոր՝ ՅԵ. — 3905
Ստորագրված է տպագր. 3 ապրիլի 1938 թ.
Պատվեր № 255։ Տիրաժ 8750
«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ՅԵՐԵՎԱՆ



# ՊԵՏԱԿԱՆ ՄԵՂԱԴՐՈՂ-Խ.Ս.Հ.Մ. ԴԱՏԱԽԱԶ ԸՆԿ. Ա. ՅԱ. ՎԻՇԻՆՍԿՈՒ ՃԱՌԸ *)

## ՆԵՐԿԱ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ընկեր դատավորնե՛ր, ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի Զինվորական Կոլեգիայի անդամներ!

Սկսելով սույն գործով իմ մեղադրական ճառը, մի գործ, որն իրենից ներկայացնում է բացառիկ յերևույթ, որն ունի հասարակական-քաղաքական արտակարգ նշանակություն, յես կուզեյի ամենից առաջ ձեր ուշադրությունը հրավիրել այս գործի մի քանի տարբերիչ գծերի վրա, նրա մի քանի աչքի ընկնող առանձնահատկությունների վրա։

Առաջին անգամը չէ, որ մեր յերկրի Գերագույն Դատարանը քննության է առնում մեր հայրենիքի բարօրության դեմ, մեր Սոցիալիստական հայրենիքի— ամբողջ

*) Կրճատ սղագրություն։

աշխարհի աշխատավորների հայրենիքի— դեմ ուղղված ամենածանր հանցագործությունների վերաբերյալ գործ: Բայց հազիվ թե յես սխալվեմ, յեթե ասեմ, վոր առաջին անգամն ե մեր դատարանն առիթ ունենում քննության առնելու այնպիսի մի գործ, ինչպիսին սա յե, քննության առնելու այնպիսի հանցագործությունների և այնպիսի վոճրագործությունների վերաբերյալ մի գործ, վորպիսիք վոր այս դատավարության ընթացքում անցան ձեր աչքերի առջևով, անցան ամբողջ աշխարհի աչքերի առջևով, այնպիսի վոճրագործների վերաբերյալ մի գործ, ինչպիսիք են այժմ ձեր առջև մեղադրյալների աթոռին նստած այս վոճրագործները:

Իսկապես, դասակարգային պայքարի և սոցիալիզմի գործին մեր թշնամիների կողմից կատաղի դիմադրության պայմաններում բոլոր դատավարություններից և վոչ մեկը չի կարող համեմատվել ներկա դատավարության հետ այս պարոնների կողմից կատարված հանցագործությունների հրեշավորությամբ, իր լկտիությամբ և ցինիզմով:

Ուրիշ վո՞ր դատավարության ժամանակ



ե հաջողվել այսպիսի ուժով և խորությամբ բացահայտել ու յերևան բերել այդ վոճրագործությունների իսկական բնույթը, այսպիսի ուժով անզգամների յերեսից պոկել նրանց նենգ դիմակները և մեր ամբողջ ժողովրդին ու ամբողջ աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց ցույց տալ միջազգային ավազակների գազանային դեմքը, վորոնք ճարպկորեն ու հմտորեն չարագործների ձեռքն ուղղում եյին մեր խաղաղ սոցիալիստական աշխատանքի դեմ, վորը կառուցել ե բանվորների և գյուղացիների նոր, յերջանիկ ու հրճվալից—ծաղկող սոցիալիստական հասարակություն:

Միայն այս մեկ հանգամանքն արդեն բավականաչափ պարզ վկայում ե այս դատավարության հասարակական-քաղաքական վիթխարի նշանակության մասին, այն մասին, վոր տվյալ դատավարությունն իրենից ներկայացնում ե աչքի ընկնող մի յերևույթ, վոր տվյալ դատավարությունն ունի պատմական նշանակություն:

Ինչո՞ւմն ե կայանում տվյալ դատավարության պատմական նշանակությունը: Ինչո՞ւմն են կայանում նրա մի քանի առանձնահատկությունները:

Այս դատավարության պատմական նշանակությունը կայանում է ամենից առաջ նրանում, վոր այս դատավարության ընթացքում բացառիկ մանրազննությամբ ու ճշգրտությամբ ցույց տրվեց, ապացուցվեց, հաստատվեց, վոր աջերը, տրոցկիստները, մենշևիկները, էսէռները, բուրժուական նացիոնալիստները և այլն և այլն, հանդիսանում են վոչ այլ ինչ, քան մարդասպանների, լրտեսների, դիվերսանտների, վնասարարների անսկզբունք, գաղափարազուրկ մի բանդա։

Ուղիղ մեկ տարի սրանից առաջ, ընկեր Ստալինը վերլուծելով մեր աշխատանքի թերությունները և մատնանշելով տրոցկիստական ու այլ յերկերեսանիներին լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումները, ասաց.

«Յերկու խոսք վնասարարների, դիվերսանտների, լրտեսների և այլոց մասին։ Հիմա, յես կարծում եմ, բոլորի համար պարզ է, վոր այժմյան վնասարարներն ու դիվերսանտները, ինչպիսի դրոշակով էլ թեկուզ դիմակավորվեն նրանք, տրոցկիստական թե բուխարինական, վաղուց արդեն



դադարել են բանվորական շարժման մեջ քաղաքական հոսանք լինելուց, վոր նրանք վեր են ածվել պրոֆեսիոնալ վնասարարների, դիվերսանտների, լրտեսների, մարդասպանների անսկզբունք ու գաղափարազուրկ մի բանդայի։ Հասկանալի յե, վոր անհրաժեշտ կլինի անողոքաբար ջախջախել ու արմատախիլ անել այդ պարոններին, վորպես բանվոր դասակարգի թշնամիների, վորպես մեր հայրենիքի դավաճանների։ Այդ պարզ է, և հետագա պարզաբանումներ չի պահանջում»։

Անցավ մեկ տարի։ Ներկա դատավարության օրինակով մենք տեսնում ենք, թե վորքան խորապես իրավացի յեր ընկեր Ստալինը տրոցկիստների ու բուխարինականների մասին տված իր գնահատականի մեջ։

Տրոցկիստները և բուխարինականները, այսինքն՝ «աջ-տրոցկիստական բլոկը», վորի վերնախավն այժմ նստած է մեղադրյալների աթոռին, այդ— քաղաքական կուսակցություն չէ, քաղաքական հոսանք

չէ, այլ— քրեական հանցագործների մի բանդա յե, և ոչ պարզապես քրեական հանցագործների, այլ այնպիսի հանցագործների, վորոնք վաճառվել են թշնամական հետախուզություններին, հանցագործների, վորոնց նույնիսկ քրեական հանցավորներն արհամարհանքով են վերաբերում վորպես ամենաստորների, ամենահետինների, ամենաանարգների, ապականվածներից ամենաապականվածների:

Այսպես կոչված՝ «աջ-տրոցկիստական բլոկը»— դա՝ լրտեսության, դիվերսիաների, վնասարարության, քաղաքական սպանությունների և իր հայրենիքը թշնամիներին վաճառող մի կազմակերպություն է:

Բլոկը չունի վոչինչ պլատֆորմական, այսպես ասած՝ վոչինչ «հոգևոր», վոչինչ իդեոլոգիական: Այն, ինչ մի ժամանակ մի վորևէ չափով յեղել է այդ բլոկի մասնակիցներից վոմանց մեջ, ապա այդ էլ վաղուց արդեն կորցրված է, ծախված, վաղուց արդեն անհայտացել է, փտել լրտեսական գարշահոտ, զզվելի ընդհատակում:

Ճիշտ է, մեղադրյալներից մի քանիսը,



հատկապես մեղադրյալ Բուխարինը այս դատավարության ընթացքում բազմիցս փորձեցին, ինչպես Ֆրանսիացիներն են ասում, լավ դեմք ցույց տալ վատ խաղի ժամանակ, ընդունել «գաղափարական» մարդկանց տեսք, իրենց բանդիտական, քրեական գործունեությունը քողարկել ամեն տեսակ «փիլիսոփայական», «իդեոլոգիական» և այլ խոսակցություններով:

Բուխարինն այստեղ փորձում էր իր նողկալի վոճրագործությունների ամբողջ գումարը հանգեցնել ինչ վոր «գաղափարական դրույթների», վորոնց մասին նա փորձում էր ասել յերկար, փքուն ճառեր: Բուխարինն այստեղ խոսում էր այդ լրտեսական-վնասարարական կազմակերպության մեջ յեղած աշխատանքի բաժանման մասին, ինչ վոր «ծրագրային կետերի» մասին, ինչ վոր «գաղափարական որիենտացիայի» մասին, թեև— ավելացնում էր նա— գաղափարական որիենտացիայի՝ դեպի կուլակություն:

Թևից բռնված, հանցանքի վրա բռնված Բուխարինը վկա յե կանչում հենց իրեն՝ Հեգելին, նետվում է լինգվիստիկայի, Ֆիլոլոգիայի և ռիտորիկայի խորքերը, ինչ

վոր ձախական բառեր ե քրթմնջում, միայն թե մի կերպ թաքցնի հետքերը: Բայց նա չի դիմանում և իր ձախական–պառանդյական քրթմնջոցը վերջացնում ե խոստովանությամբ, թե՝

«Մենք բոլորս վերածվեցինք կատաղի հակահեղափոխականների, սոցիալիստական հայրենիքի դավաճանների, մենք դարձանք լրտեսներ, տեռորիստներ, կապիտալիզմի ռեստավրատորներ: Մենք գնացինք մատնության, ոճրագործությունների, դավաճանության: Մենք վերածվեցինք ապստամբական ջոկատի, կազմակերպում եյինք տեռորիստական խմբեր, զբաղվում եյինք վնասարարությամբ, ուզում եյինք տապալել պրոլետարիատի խորհրդային իշխանությունը»:

Բուխարինը դրան պետք ե ավելացներ. «Մենք վերածվեցինք ճապոնա–գերմանական հետախուզության վաստիկանական բաժանմունքի, մենք դարձանք հայրենիքի անամոթ վաճառողներ»:

Բլոկը՝ այդ՝ տարբերկրյա հետախուզությունների գործակալությունն ե: Բլոկի անդամները— և՛ Տրոցկու,— վորն այստեղ



նստած չե մեղադրյալների աթոռին— Բուխարինի, Ռիկովի, Յագոդայի, Կրեստինսկու, Ռոզենհոլցի նման նրա ղեկավարները, և Զուբարյովի, Մաքսիմով— Դիկովսկու և մյուսների նման նրա շարքային անդամները՝ դրանք այդ հետախուզությունների ստրուկներն են, դրանք իրենց տերերի ծառաներն են:

Փիլիսոփայությունը և լրտեսությունը, փիլիսոփայությունը և վնասարարությունը, փիլիսոփայությունը և դիվերսիան, փիլիսոփայությունը և սպանությունները՝ ինչպես հանճարը և չարագործությունը՝ յերկու անհամատեղելի բաներ են:

Յես ուրիշ օրինակներ չգիտեմ,— սա պատմության մեջ առաջին օրինակն ե այն բանի, թե ինչպես լրտեսն ու մարդասպանը գործում ե փիլիսոփայությամբ՝ վորպես մանրացված ապակիով, վորպեսզի փոշի լցնի իր զոհի աչքերը, նախ քան ավազակային լախտով նրա գլուխը ջախջախելը:

# „ԱՋ-ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ԲԼՈԿԸ“—ՈՏԱՐԵՐԿՐՅԱ ՀԵՏԱԽՈՒԶՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ

«Աջ-տրոցկիստական բլոկը», որն այժմ նստած է մեղադրյալների աթոռին, ինչպես այդ ամենայն ակներևությամբ ցույց տվեց դատական քննությունը,— դա միջազգային ֆաշիզմի առաջավոր ջոկատ է միայն, դա դահիճների ու ընդհատակյա մարդասպանների մի վոհմակ է, վորոնց ոգնությամբ գործում է ֆաշիզմը զանազան յերկրներում, առաջին հերթին Իսպանիայում և Չինաստանում:

Ահա թե ինչո՛ւ «աջ-տրոցկիստական բլոկի»— վորպես լրտեսական բանդայի— մերկացումը հսկայական նշանակություն ունի վոչ միայն մեր Սոցիալիստական հե-



ղափոխության համար, այլ և հսկայական նշանակություն ունի ամբողջ միջազգային պրոլետարիատի համար:

Այն՝ հսկայական նշանակություն ունի խաղաղության գործի համար՝ ամբողջ աշխարհում: Այն՝ հսկայական նշանակություն ունի ամբողջ մարդկային կուլտուրայի համար, հանուն իսկական դեմոկրատիայի և ժողովուրդների ազատության մղվող պայքարի համար, պատերազմի բոլոր ու ամեն տեսակ հրձիգների դեմ, միջազգային բոլոր պրովոկացիաների ու պրովոկատորների դեմ մղվող պայքարի համար:

Ահա թե ինչո՛ւ այս դատավարության ընթացքին հետևում են սրտատրոփ ուշադրությամբ աշխարհի բոլոր յերկրների, իսկ հատկապես այն յերկրների աշխատավոր մասսաները, վորտեղ ժողովուրդը հանուն իր ազատության հերոսական պայքար է մղում ֆաշիստական լծի դեմ:

Բուխարիններն ու ռիկովները, յագոդաներն ու բուլանովները, կրեստինսկիներն ու ռոզենհոլցները, իկրամովները, շարանգովիչները, խոջաևները և ուրիշները՝ այդ՝ նույն հինգերորդ զորասյունն է, այդ՝ նույն

ՊՈՈՒՄ-ն է, այդ՝ նույն կու-կլուքս-կլանն է: Այդ՝ մեկն է ֆաշիստական պրովոկատորների ու պատերազմի հրձիգների ջոկատներից, վորոնք գործում են միջազգային ասպարեզում:

Այդ ջոկատի ջախջախումը մեծ ծառայություն է խաղաղության գործին, դեմոկրատիայի գործին, իսկական մարդկային կուլտուրայի գործին:

Սակայն այս դատավարության բացառիկ նշանակությունը չի սահմանափակվում նրանով, ինչ վոր ասվեց:

Այստեղ, մեղադրյալների աթոռին նստած է վոչ թե ինչ վոր մի հակախորհրդային խումբ, վոչ թե ինչ վոր մի ստորերկրյա հետախուզության գործակալություն: Այստեղ, մեղադրյալների աթոռին նստած են մի ամբողջ շարք հակախորհրդային խմբեր, վորոնք իրենցից ներկայացնում են ԽՍՀՄ-ի նկատմամբ թշնամի մի ամբողջ շարք ոտարերկրյա պետությունների հետախուզությունների գործակալությունը:

Այս «գործում» խառնվել են հակախորհրդային բոլոր ուժերի, խմբակների և կազմակերպությունների մնացորդները, խառնվել



են, առնվազն, ինչպես այդ ճշտորեն հաստատված է դատական քննությամբ, ոտարերկրյա չորս հետախուզությունները,— ճապոնական, գերմանական, լեհական և անգլիական և, հասկանալի յե, բոլոր մյուս ոտարերկրյա հետախուզությունները, վորոնք մատնանշված հետախուզությունների հետ պահպանում են բարեկամական, այսպես կոչված՝ ոպերատիվ կոնտակտ:

Արդարև, յեթե խոսել Տրոցկու մասին, ապա գեստապոյի հետ նրա կապը սպառիչ կերպով ապացուցված է արդեն տրոցկիստական-զինովյեվական տեռորիստական կենտրոնի 1936 թվի պրոցեսի և հակախորհրդային տրոցկիստական կենտրոնի 1937 թվի հունվարի դատավարությունների ընթացքում: Իսկ այժմ ապացուցված է, վոր գերմանական քաղաքական վոստիկանության և ուրիշ յերկրների հետախուզությունների հետ նրա կապը վերաբերում է շատ ավելի վաղ ժամանակաշրջանի, վոր Տրոցկին գերմանական հետախուզության հետ կապված է յեղել արդեն 1921 թվից: Այդ մասին միանգամայն ճիշտ ցուցմունք տվեց Կրեստինսկին ներկա դատավարու-

թյունում։ Այժմ ապացուցված է, որ Տրոցկին անգլիական «Ինտելլիջենս Սերվիս» հետախուզության հետ կապված է եղել 1926 թվից։ Այդ մասին ճիշտ ցուցմունք տվեց,— և դա ապացուցված է,— մեղադըրյալ Ռակովսկին։ Ամբողջ բլոկը Տրոցկու գլխավորությամբ ամբողջովին բաղկացած է միայն օտարերկրյա լրտեսներից և ցարական պահնորդականներից։

Բուխարինը և Ռիկովն իրենց գործակիցների միջոցով կապված են եղել մի շարք օտարերկրյա հետախուզությունների հետ, որոնց նրանք սիստեմատիկորեն սպասարկել են։

Յագոդային, ինչպես ճանճեր, կպել էին գերմանական, ճապոնական և լեհական լրտեսները, որոնց նա ոչ միայն պաշտպանում էր, ինչպես այդ նա ինքը խոստովանեց այստեղ, այլև նրանց միջոցով լրտեսական աշխատանք էր կատարում, հետախուզություններին հաղորդելով պետական գաղտնի նյութեր, ծախելով և մատնելով մեր երկիրն այդ օտարերկրյա հետախուզություններին։

Կրեստինսկին, սեփական խոստովանու-





թյամբ, գերմանական լրտես է 1921 թվից։

Ռոզենհոլցը— տրոցկիստական ընդհատակի ղեկավարներից մեկը, ինչպես հաստատված է, գերմանական գլխավոր շտաբի համար իր լրտեսական աշխատանքը, ինչպես նա ինքը խոստովանեց, սկսել էր 1923 թվին, իսկ անգլիական հետախուզության համար, ինչպես նա ինքը նույնպես խոստովանեց այդ հանցագործությունը,— 1926 թվին։

Ռակովսկին— Տրոցկու ամենամոտ և առանձնապես վստահելի մարդկանցից մեկը,— իր սեփական խոստովանությունների, անգլիական «Ինտելլիջենս-Սերվիս» հետախուզության գործակալ էր հանդիսանում 1924 թվից և ճապոնական հետախուզության գործակալ— 1934 թվից։

Չերնովը հօգուտ Գերմանիայի իր լրտեսական աշխատանքն սկսել էր, իր սեփական խոստովանությամբ, 1928 թվին, գերմանական հետախուզության հետ կապվելով ոչ առանց էմիգրանտ—մենշևիկ Դանի նախաձեռնությամբ և աջակցությամբ։

Շարանգովիչը լեհական հետախուզության կողմից հավաքագրվել և ՍՍՀՄ-ում

լրտեսական աշխատանքի համար ուղարկվել էր 1921 թվին:

Գոլինկոն, ըստ իր սեփական խոսքերի, գերմանական և լեհական հետախուզությունների լրտես էր դարձել 1932 թվին, իսկ մինչ այդ լրտեսական կապ էր պահում այդ հետախուզությունների, հատկապես լեհական հետախուզության հետ:

Իկրամովը և Խոջաևը իրենց կուրբաշիների միջոցով, Բուխարինի ղեկավարությամբ «աշխատում են» անգլիական հետախուզության ռեզիդենտների հետ կապեր կազմակերպելու վրա, վորի ամրապնդման համար ԽՍՀՄ-ի միջին-ասիական սահմաններում քիչ չի աշխատել վոչ անհայտ հետախույզ և ավանտյուրիստ Լոուրենսը:

Հետո գալիս են ցարական պահնորդական բաժնի պրովոկատորներն ու գործակալները—Զելենսկին, Զուբարևը, Իվանովը: Իվանովը, բացի այդ, նաև անգլիական լրտես է:

Ավելացրեք այդ կամպանիային թունավոր-մարդասպանների— Լևինի, Պլետնյովի, Կազակովի, Կրյուչկովի, Մաքսիմով—Դիկովսկու և ուրիշների խմբակը, վորոնք կապված են նրանց հետ, և այդ ժամանակ այդ բլոկի ու նրա մասնակիցներից յուրա-



քանչյուրի քաղաքական— քաղաքական կերպարանքը մինչև վերջը պարզ կլինի:

Ահա թե ինչու մենք կարող ենք ասել,— դա մարդկային այն տականքների պարշահատ կույտն է, վորոնք վոչնչի առաջ կանգ չեն առել, վոչնչից չեն խորշել, պատրաստ են եղել ամեն ինչի համար— գործարանների և յերկաթուղային կնոցքների պայթեցումների, անասուններին վոչնչացնելու, հացը փչացնելու, սպանության, լրտեսության և դավաճանության համար:

Ամբողջ աշխարհի առաջ այժմ մերկացվում է բուխարինների, յագոդաների, կրեստինսկիների, ռիկովների և այլ աջ-տրոցկիստների արգահատելի, դավաճանական, բանդիտական գործունեությունը: Նրանք ծախում եյին հայրենիքը, վաճառքի եյին հանում նրա պաշտպանության ռազմական գաղտնիքները, նրանք լրտեսներ եյին, դիվերսանտներ, վնասարարներ, մարդասպաններ, գողեր,— և ամեն ինչ՝ նրա համար, վորպեսզի ոգնեն ֆաշիստական կառավարություններին, տապալեն խորհրդային կառավարությունը, տապալեն բանվորների և գյուղացիների իշխանությունը, վերականգնեն կապիտալիստների և

կալվածատերերի իշխանությունը, մասնատեն խորհրդային ժողովրդի յերկիրը, անջատեն ազգային հանրապետությունները և դրանք վերածեն իմպերիալիստների գաղութների:

Այդպես է յեղել նրանց տերերի հրամանը և նրանք այդ հրամանը կատարում եյին ինչպես կարող եյին, աշխատելով ամբողջ ուժերով մեկ:

Այդպես են այդ մարդիկ, այդպես են նրանց պլանները և հաշիվները, այդպես են նրանց խայտառակ և հրեշավոր հանցագործությունները:

Մեղադրյալ Բուխարինն այստեղ պարծենկոտությամբ ասում եր, վոր այդ նրանք, աջերը, կապիտալիստական ձայնարկուները տրոցկիզմը զինեցին կապիտալիզմի ռեստավրացիայի թեորիայի «հզոր» գործիքով:

Ի՞նչ «թեորիայի» մասին է խոսում Բուխարինը, քաղաքական այդ մարզված սրիկան և ԽՍՀՄ-ի դեմ տասներկյա լրտեսության խաչորդայույն կազմակերպիչներից մեկը:

Վորպես սատանան խունկից՝ Բուխարինը փախչում է իր հանցանքը խոստովանելուց,



Բուխարինն այստեղ ժխտում է իր հանցանքը:

Ի՞նչ արժե այդ ժխտումը՝ Բուխարինի դեմ մեզ մոտ յեղած ապացույցների լույսի տակ:

Կհիշեցնեմ միայն, վոր մարտի 7-ի առավոտյան նիստում Բուխարինը և Ռիկովը լիովին մերկացվեցին լրտեսական կապերի և գերմանական ու լեհական հետախուզությունների օգտին լրտեսական աշխատանքի մեջ:

Իսկ Բուխարինը, այդ պայմաններում, խոսում է ինչ վոր «թեորիայի» մասին, փորձելով «թեորիապես» բացատրել իրերի ընթացքը, վորոնք աջերին հասցրին խորհրդային իշխանության և խորհրդային ժողովրդի յերդվյալ թշնամիների բանակը...

Կարիք չկա այդ բացատրությունները փնտրելու բուխարինական «թեորիայում»: Դրանք պետք է փնտրել թեկուզ և «թեորիայի» նման ինչ վոր բանով քողարկված բուխարինական հանցագործություններում:

Հենց դրանք, այդ հանցագործությունները բացատրում են իրերի իսկական ընթաց-

քը, դեպքերի և պայքարի իսկական տրա-
մաբանությունը, վորոնք յերես առ յերես կանգնեցրին յերկու աշխարհ, յերկու բլոկ— դավաճանների, ստորերկյա կապիտալի վարձկանների բլոկը, վորն այժմ մերկացվել ու ճզմվել է խորհրդային մեծ յերկրի ցասումով և հզորությամբ, մատնիչների բլոկը, վորոնք ծածկված են հավիտենական արգահատանքով և ամբողջ աշխարհի աշխատավոր ժողովրդի միլիոնավոր մասսաների խայտառակությամբ ու անեծքով,— և խորհրդային հայրենասերների բլոկը, դեպի իրենց հայրենիքը տածած սիրո մեջ՝ մեծ և անպարտելի, թշնամիների դեմ բազմաթիվ պատմական ճակատամարտերում հաղթած, վորոնք պատրաստ են կոմունիստական կուսակցության և մեծ Ստալինի ղեկավարությամբ խորտակիչ հակահարված տալ ամեն մի թշնամու, ամեն պայմաններում, ամեն ժամանակ, վո՛րտեղից էլ վոր նա յերևա, չնայելով ամեն մի դավաճանություն, ամեն մի մատնություն:

Ներկա դատավարության նշանակությունը, իհարկե, վորոշվում է նաև այն դա-



սերով, վորոնք անխուսափելի անհրաժեշտությամբ այս դատավարությունից պետք է հանենք մենք բոլորս, խորհրդային յերկրի հայրենասերներս:

Մեր հայրենիքը վայելում է սոցիալիստական հաղթանակի յերջանկությունը, կապիտալիստական լծից ազատագրված աշխատանքի յերջանկությունը և բերկրանքը:

Քսան տարի, վորպես անխորտակելի ժայռ, կանգնած է խորհրդային պետությունը— բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետությունը:

Քսան տարի համառորեն ու հաստատակամությամբ ընթանում է բազմաթիվ ժողովուրդների աշխատանքը, վորոնք միավորվել են Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների յեղբայրական Միության մեջ, վորը կառուցված է սոցիալիստական հեղափոխության առաջնորդներ Լենինի և Ստալինի հանճարով:

Այդ քսան տարում յերբեմնի աղքատ և թույլ յերկիրը դարձավ հարուստ և ուժեղ յերկիր, հզոր և անպարտելի յերկիր:

Այդ քսան տարում ռուսաստանյան պե-

տությունը դարձավ սոցիալիստական պետություն:

Խորհուրդների Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարում, որն ընդունեց Ստալինյան Մեծ Սահմանադրությունը, ընկեր ՍՏԱԼԻՆԸ ասում էր.

«Մեր խորհրդային հասարակությունը հասավ այն բանին, որ նա արդեն հիմնականում իրականացրեց սոցիալիզմը, ստեղծեց սոցիալիստական հասարակարգ, այսինքն՝ իրականացրեց այն, ինչ որ մարքսիստների մոտ այլ կերպ կոչվում է կոմունիզմի առաջին կամ ստորին փուլ: Նշանակում է՝ մեզ մոտ արդեն հիմնականում իրականացված է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը: Կոմունիզմի այդ փուլի հիմնական սկզբունքն է, ինչպես հայտնի յե, հետևյալ ֆորմուլը. «Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»:

Սոցիալիզմը մտել է մեր ժողովրդի կենցաղի մեջ, սոցիալիզմը հաղթանակել է մեր յերկրում: Յեվ չկա աշխարհում մի ուժ, որ կարողանա թուլացնել սոցիալիս-



տական այդ հաղթանակի նշանակությունը կամ մեծությունը: Յեվ այդ,— չնայելով բոլոր դժվարություններին, որոնք կանգնած եյին և դեռ կանգնած են մեր ճանապարհին: Յեվ այդ, — չնայելով մեզ թշնամի օտարերկրյա պետությունների և մեր յերկրում շահագործող դասակարգերի փտած և մեռնող մնացորդների բոլոր ճիգերին՝ կանգնեցնել մեր հասարակության պրոգրեսիվ զարգացումը մեր յերկրում, խանգարել մեր սոցիալիստական հաջողությունները, վիժեցնել մեր խաղաղ ստեղծագործական աշխատանքը՝ ԽՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցելու բնագավառում:

Կարելի յե առանց որևէ չափազանցության ասել, որ խորհրդային պատմության անցած քսան տարում մեր պետությունը և մեր ժողովուրդը չեն տեսել ո՛չ մի տարի, ո՛չ մի ամիս, և օր, յերբ թշնամիները չհարձակվեյին մեզ վրա:

Մեծ Հոկտեմբերի առաջին օրերից մինչև պատմական դարաշրջաններից մեծագույնի— Ստալինյան Սահմանադրության դարաշրջանի փայլուն օրերը, Խորհուրդների յերիտասարդ հանրապետությունը դուրս չի գալիս շահագործողների և նրանց անթիվ

գործակալության, — տրոցկիստների, մենշևիկների, եսերների, բուխարինականների, զինովևականների, մուսավաթիստների, դաշնակների, վրացական, ուզբեկական և այլ նացիոնալիստների, սև հարյուրակայինների, սպիտակ — գվարդիականների, կադետների, տերտերների, կուլակների և այլն և այլն — դասակարգային հարձակման ճանկից:

Այս դաստիարակությունը մի անգամ ևս մեզ հիշեցրեց, և այն ել չտեսնված ուժով և սրությամբ հիշեցրեց, որ երկու աշխարհ, որպես անհաշտ և մահացու թշնամիներ, կանգնած են իրար դեմ — կապիտալիզմի աշխարհը և սոցիալիզմի աշխարհը:

ԽՍՀՄ-ում սոցիալիզմի գործի համար կապիտալիստական շրջապատման վտանգի վրա մեր ուշադրությունը բազմիցս դարձրել են մեր ուսուցիչներ Լենինը և Ստալինը:

1919 թվի մարտին ՌԿ(բ)Կ 8-րդ համագումարում Լենինն ասում եր.

«Մենք ապրում ենք ոչ միայն պետության մեջ, այլ նաև պետությունների սիստեմում, և խորհրդային հան-



րապետության գոյությունը իմպերիալիստական պետությունների կողքին աներևակայելի յե. Վերջ ի վերջո կամ մեկը, կամ մյուսը կհաղթի: Իսկ մինչև որ այդ վերջը գա, մի շարք ամենասոսկալի ընդհարումներ խորհրդային հանրապետության և բուրժուական պետությունների միջև անխուսափելի յեն»: (Հատ. 24, եջ 122): «Հարկավոր ե հիշել, — սովորեցնում եր Լենինը, — որ ամեն մի արշավանք մեր դեմ միշտ մազից ե կախված»: (Հատ. 27, եջ 117):

Ընկեր Ստալինը մոտ որերս մեզ մի անգամ ևս հիշեցրեց կապիտալիստական շրջապատման մասին:

«Իսկապես, — գրում եր ընկեր Ստալինն իր պատմական պատասխանում ընկ. Իվանովին, — ծիծաղելի և հիմարություն կլիներ փակել աչքերը կապիտալիստական շրջապատման փաստի առաջ և կարծել, որ մեր արտաքին թշնամիները, օրինակ՝ ֆաշիստները, չեն փորձի առիթի դեպքում ռազմական հարձակում գործել ԽՍՀՄ-ի վրա: Այդպես կարող են մտածել

միայն կույր պարծենկոտները, կամ թաղնված թշնամիները, վորոնք ցանկանում են թմրեցնել ժողովրդին: Վոչ պակաս ծիծաղելի կլիներ ժխտել, վոր ռազմական ինտերվենցիայի ամենափոքր հաջողության դեպքում՝ ինտերվենտները կփորձեն իրենց գրաված շրջաններում քանդել խորհրդային կարգերը և վերականգնել բուրժուական կարգերը: Մի՞թե Դենիկինը կամ Կոլչակն իրենց գրաված շրջաններում չեյին վերականգնում բուրժուական կարգերը: Ինչո՞վ են ֆաշիստները լավ Դենիկինից կամ Կոլչակից: Ժխտել ռազմական ինտերվենցիայի և ռեստավրացիայի փորձերի վտանգը կապիտալիստական շրջապատման գոյության պայմաններում՝ կարող են միայն քյալլագյողները կամ թաղնված թշնամիները, վորոնք ցանկանում են պարծենկոտությամբ քողարկել իրենց թշնամությունը և ձգտում են դեմոբիլիզացիայի յենթարկել ժողովրդին»:

Ինտերվենցիայի հաջողության վրա մի շարք տարիների ընթացքում հույս են դրել մեր թշնամիները, խորհրդային իշխա-



նության դեմ ուղղված պայքարի համար կազմակերպելով և վոգեշնչելով ՍՍՀՄ-ի ներսում զանազան հակախորհրդային խմբակները, հույս ունենալով այդ խմբակների ոգնությամբ իրականացնել իրենց ավազակային դիտավորությունը: ՍՍՀՄ-ում խորհրդային իշխանության դեմ ուղղված վոչ մի, չասած թե քիչ լուրջ դավադրություն չէր լինի առանց տարբերկրյա կապիտալիստների և զինվորականության ուղղակի և ամենաակտիվ մասնակցության:

1921 թվին Լենինը մեզ նախազգուշացնում էր.

«Մենք շրջապատված ենք համաշխարհային բուրժուազիայով, վորը հսկում է տատանման ամեն մի րոպեյի վրա, վորպեսզի վերադարձնի «յուրայիններին», վորպեսզի վերականգնի կալվածատերերին և բուրժուազիային» (Հատ. 26, եջ 348):

Ընկեր Ստալինն անդուլ կերպով հիշեցնում է մեզ կապիտալիստական շրջապատման վտանգի մասին, ապացուցում է, վոր... «Մեր յերկրի մեռնող դասակարգերի դիմադրությունը տեղի յե ունենում վոչ թե արտաքին աշխարհից չեզոքացած,

այլ հանդիպում է ոժանդակության՝ կապիտալիստական շրջապատման կողմից»: («Լենինիզմի հարցերը», էջ 386):

Հայտնի յե, վոր թե՛ Շախտիի վնասարարության և թե՛ «արդյունաբերական կուսակցության» մասնակիցները վոչ միայն զբաղվում էին վնասարարությամբ և պատերազմի դեպքում դիվերսիոն ակտեր էին պատրաստում, այլև սիստեմատիկ կերպով լրտեսական աշխատանք էին կատարում, ընդ վորում, ինչպես այդ պարզվեց «արդյունաբերական կուսակցության» գործից, այդ լրտեսական աշխատանքը կատարելու համար Ռամզինը կազմակերպել էր նույնիսկ հատուկ հանձնաժողով, նախագահությամբ վնասարար պրոֆեսոր Ոսադչիի, վորն այն ժամանակ Պետպլանի նախագահի տեղակալն էր: «Արդյունաբերական կուսակցության» ծրագրում ուշադրությունը դրվում էր Մոսկվայում, Լենինգրադում, Դոնբասում, Ուրալում կամուրջները պայթեցնելու, յերկաթուղիները փչացնելու, էլեկտրոկայանները պայթեցնելու, գործարանները և ֆաբրիկները կանգնեցնելու միջոցով դիվերսիաներ կատարելու վրա:



Մի՞թե մեր յերկրում ոտարերկրյա հետախուզությունների դիվային աշխատանքի մասին չի խոսում նաև անգլիական ինժեներներ Տորնտոնի, Մակդոնալդի և ուրիշների, «Ինտելլիջենս—Սերվիս»-ի 1933 թ. մերկացված գործակալների, մեր մի քանի էլեկտրոկայաններում վնասարարություն և դիվերսիաներ կազմակերպողների, այն մարդկանց գործը, վորոնք հենակետեր էին պատրաստում մոտալուտ ինտերվենցիայի համար:

Մի՞թե նույն բանի մասին չեն խոսում, վերջապես, 1936—1937 թվերի վերջին դատավարությունները, վորոնք մերկացրին տրոցկիստների, զինովյեվականների և այլ հակախորհրդային տարրերի հրեշավոր հանցագործությունները,— այն տարրերի, վորոնք ծառայության մեջ էին մտել ոտարերկրյա վոստիկանական պահնորդական բաժիններում, դարձել այդ պահնորդական բաժինների լրտեսական և դիվերսիոն տեռորիստական գործակալություն: Այո՛, այո՛, այդ մասին լիակատար համոզիչ կերպով խոսում, ճչում են մեր խորհրդային դատարանի դատավճիռներով

վոչնչացված այդ բանդիտական շայկաների կոշմարային հանցագործությունները։

Այդ նույնն ամբողջովին ցույց տվեց և ներկա դատավարությունը, վորի գլխավոր «հերոսները» հանդիսանում են «աջ-տրոցկիստական բլոկի» կազմակերպիչները և վոգեշնչողները, վորոնք մերկացված են վորպես սոցիալիզմի, մեր հայրենիքի, մեր ժողովրդի կատաղի թշնամիներ։

Այս դատավարությունը հանրագումարի յե բերում խորհրդային պետության և Լենինի–Ստալինի կուսակցության դեմ այն մարդկանց պայքարը, վորոնք, ինչպես այդ բացահայտ պայծառությամբ և համոզիչ կերպով ապացուցեց դատական քննությունը, իրենց ամբողջ կյանքում շրջում էյին դիմակի տակ, վորոնք այդ պայքարն սկսել էյին ներկա ժամանակվանից շատ առաջ, վորոնք պրովոկատորական ամպագորգոռ ֆրազներով քողարկված, ծառայում էյին վոչ թե հեղափոխության ու պրոլետարիատին, այլ հակահեղափոխությանը և բուրժուազիային, խաբում էյին կուսակցությանը, խորհրդային իշխանությանը, վորպեսզի ավելի հարմար կերպով կատարեն



իրենց դավաճանության սև գործը, վորպեսզի շարունակեն մնալ չմերկացված։

Արգահատելի հանցագործները խարերայության, կեղծավորության ու յերկերեսանիության միջոցով կարողացան մինչև վերջին ժամանակներս տարկետել իրենց մերկացման ժամը։ Սակայն այդ ժամը վրա հասավ և հանցագործները մերկացված են, մերկացված են ամբողջովին և մինչև վերջ։

Դիմակը պատռված է։ Նրանց իսկական դեմքը, նրանց իսկական կերպարանքը հիմա պարզ է ամեն մեկին։ Ամեն մեկին պարզ են և նրանց խայտառակ գործերը, ինչպես պարզ է նրանց վողորմելի, խայտառակ վախճանը։

Ներկա դատավարությունը լրիվին և մինչև վերջ այժմ մերկացրեց վոչ միայն տրոցկիստներին, այլև բուխարինականներին իբրև ֆաշիստական գործակալություն,— վորոնք յերկար ժամանակվա ընթացքում վարպետությամբ դիմակավորվում էյին, վարպետությամբ խուսափում իրենց մերկացումից, վորպես մարդասպաններ, լրտեսներ և պրովոկատորներ։

Այժմ վերջնականապես պարզվեց նրանց՝ հակահեղափոխական շայկայի վերածվելու

այդ ամբողջ պրոցեսը, վերածվելու, վորն արդեն վաղուց նշվել էր և բազմիցս մերկացվել մեր կուսակցության և անձամբ ընկեր Ստալինի կողմից:

1918 թվին սկսելով Լենինի, վորպես խորհրդային պետության ղեկավարի դեմ ուղղված դավադրություններից, 1918 թվին իր հանցավոր ձեռքը բարձրացնելով Լենինի դեմ, մի՞թե Բուխարինը կարող էր վերջացնել այլ կերպ, քան վերջացրեց այժմ,— մեղադրյալների այս խայտառակ աթոռով, սպասելով խորհրդային ժողովրդի ահեղ, բայց արդարացի դատին, խորհրդային ժողովրդի, վորն այժմ անեծքով է արտասանում այդ ատելի անունը:

Սկսելով սոցիալիզմի մեջ կուլակի խաղաղ ներաճման վնասակար «թեորիայից», վերջին այս բոլոր տասը տարիներում ընդհատակյա պայքար մղելով կուսակցության և խորհրդային ժողովրդի դեմ, կարո՞ղ էր արդյոք Բուխարինն իր քաղաքական կարիերան վերջացնել այլ կերպ, քան նա վերջացրեց այն, ծամածռվելով և խեղկատակություն անելով նույնիսկ այժմ, իր, գուցե վերջին, մահվան ժամի շեմքին:

1930 թվին կուսակցության 16-րդ հա-



մագումարում ընկեր Ստալինը, մերկացնելով տրոցկիզմի յերկվությունը, մատնանշում էր, վոր այդ յերկվությամբ... «բացատրվում է այն փաստը, վոր իրենց իբր թե «կատաղի հարձակումներն աջ ուկլոնիստների դեմ տրոցկիզմը» (դա կապիտուլյանտություն է դիմակի տակ) «սովորաբար պսակում է բլոկով նրանց հետ, վորպես առանց դիմակի կապիտուլյանտների հետ»:

Տրոցկիստները և աջերը— դրանք կապիտուլյանտներ են: Նրանցից վոմանք կապիտուլյանտներ են հիստերիկ, պրովոկացիոն, «հեղափոխական» ֆրազների դիմակի տակ, մյուսները կապիտուլյանտներ՝ առանց դիմակի:

Ինչո՞վ է բացատրվում տրոցկիստների և աջերի դիրքերի այդ հարազատությունը, նրանց մշտապես մեկմեկու ձգտելը, մշտապես բլոկներ փնտրելը, վերջապես, այդ բլոկների առկայությունը Կուսակցության, խորհրդային պետության և սոցիալիստական շինարարության դեմ ուղղված նրանց պայքարի զանազան էտապներում:

Այդ, իհարկե, բացատրվում է ամենից առաջ տրոցկիստների և աջերի սոցիալա-

կան բաղայի ընդհանրությամբ: Այդ բացատրվում է նրանով, վոր թե տրոցկիստները և թե աջերն արտացոլում են կապիտալիստական տարրերի ճնշումը,— վորոնք դիմադրում են սոցիալիզմի հաղթություններին, մատղիր չեն խաղաղ և կամացուկ հեռանալ պատմական բեմից:

Այդ բացատրվում է, ինչպես մենք հիմա գիտենք, նրանով, վոր թե՛ առաջինները և թե՛ մյուսները գործել են այն միևնույն տերերի հրամանով, վորոնք նստած են ԽՍՀՄ-ին թշնամի տարբերկրյա պետությունների գլխավոր շտաբներում և հետախուզություններում:

Տրոցկիստները և բուխարինականներն արդեն շատ տարիներ առաջ հայտնվեցին հակահեղափոխության ճամբարում: Տրոցկիզմը և աջերն արդեն շատ տարիներ առաջ դարձել էյին բուրժուական հակահեղափոխության գինակիրներ: Տրոցկիստները և աջերն արդեն շատ տարիների ընթացքում զենք են մատակարարում հակահեղափոխական բուրժուազիային՝ խորհրդային պետության դեմ պայքարելու: Տրոցկիստները և աջերն անում են դավաճանության միևնույն սև գործը:



Փաստերը լիակատար անվիճելիությամբ հաստատում են թե՛ աջերի և տրոցկիստների կնքած բլոկի անխուսափելիությունն ու բնականությունը և թե՛ այդ բլոկի վերածումն տարբերկրյա ֆաշիստական հետախուզությունների գործակալության:

# ԻՆՉՊԵՍ ԵՅԻՆ ԱՋ ՏՐՈՑԿԻՍՏՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԴԵՄ, ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԳՈՐԾԻ ԴԵՄ

Թե ինչպես եյին տրոցկիստները և զինովևականները պայքարում Լենինի դեմ, սոցիալիզմի դեմ, ՍՍՀՄ-ում սոցիալիստական նոր հասարակություն կառուցելու համար Պրոլետարական հեղափոխության հերոսական ջանքերի դեմ,—սպառիչ լիակատարությամբ ցույց տվին նախորդ յերկու դատավարությունները՝ Պյատակովի, Զինովևի, Կամենևի, Ռադեկի, Սմիրնովի և այլոց օրինակով:

Ես այժմ կուզեյի հիշեցնել վորոշ փաստեր, վորոնք այդ տեսակետից բնութագրում են այս դատավարության մի քանի հերոսների և առաջին հերթին մեղադրյալ-



ներ Բուխարինի և Ռիկովի դիրքն ու վարմունքը:

Մի քանի համառոտ տեղեկություններ.—

1909 թիվ—Բուխարինը հարում է ոտզովիզմին:

1914—1917 թ. թ. (իմպերիալիստական պատերազմի շրջան)—Բուխարինը «ձախ կոմունիստ» է, ժխտում է մինիմում ծրագիրը, պայքար է մղում Լենինի դեմ:

1914 թիվ—Նա զբաղվում է սեփական թերթ հրատարակելու պլանով՝ հակադրելով այն բոլշևիկյան մամուլին, լենինյան մամուլին:

1915 թվի գարունը—Բուխարինը տրոցկիստ է: Բեռնի կոնֆերանսում նա հանդես է գալիս քաղաքացիական պատերազմի լոզունգի դեմ, հանուն տրոցկիստական-մենշևիկյան «Նաշե սլովո»-ի հետ միասնություն հաստատելու: Լենինը գրում է «Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» հոդվածը, Բուխարինն այդ մեկնաբանում է վորպես սոցիալ-պատրիոտիզմի արտահայտություն:

1915 թվի աշունը—Բուխարինը հանդես է գալիս ազգերի ինքնորոշման իրավունքը ժխտող թեզիսով:

1916 թ. փետրվար—Բուխարինը համերաշխում է հոլանդական ձախ սոցիալ-դեմոկրատների կիսաանարխիստական ծրագրի հետ:

1916 թիվ—Բուխարինն «Ինտերնացիոնալ մոլոդյոժի» ժուռնալում հանդես է գալիս պետության հարցի վերաբերյալ անարխիստական, հակալենինյան հայացքներով, ընդդեմ պրոլետարիատի դիկտատուրայի:

«Համաշխարհային տնտեսությունը և իմպերիալիզմը» հոդվածում (1915 թ.) Բուխարինը բացե ի բաց պաշտպանում է տրոցկիստական այն թեզիսը, թե առանձին երկրների պրոլետարիատի բաժան-բաժան ելույթները հաղթել չեն կարող: Այլ կերպ ասած,— ինչպես ասում էր Լենինը— բուխարինները սոցիալիզմը հետաձգում էին... «մինչև հունական կալենդը, այսինքն մինչև «երբեք» (Լենին, հատ. 19, էջ 221): Վլադիմիր Իլյիչը 1916 թվին նրա մասին գրում էր, որ նա,— Բուխարինը «(1) դյուրահավատ է դեպի բամբասանքները և (2) քաղաքականության մեջ չափազանց անկայուն է»: Լենին, հատ. 29, էջ 229):

«Պատերազմը,—գրում էր Լենինը,—նրան դրդեց դեպի կիսաանարխիստական գաղա-



փարները: Այն խորհրդակցությանը, որն ընդունեց Բեռնի բանաձևերը (1915 թվի գարուն), նա տվեց այնպիսի թեզիսներ... որոնք անմարության գագաթնակետն էին, խայտառակություն, կիսաանարխիզմ»:

1916 թվին—ինչպես յես արդեն ասացի,— «Ինտերնացիոնալ մոլոդյոժի» ժուռնալում Բուխարինն անարխո-սինդիկալիստական մտքեր էր զարգացնում դեպի պետությունը պրոլետարիատի սկզբունքային թշնամության մասին, ամեն մի պետության պայթեցման մասին:

Հետագայում, Վ. Ի. Լենինի մահվանից մեկ տարի հետո Բուխարինը հանդես յեկավ ըկտի պնդմամբ, թե այդ հարցում սխալվում էր վոչ թե ինքը՝ Բուխարինը, այլ Լենինը:

1916—1917 թ. թ.—Բուխարինը Տրոցկու հետ միասին խմբագրում էր տրոցկիստական «Նոր աշխարհ» (Նյու-Յորք) թերթը, վորի մեջ ժխտում է մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը:

1917 թիվ—կուսակցության 6-րդ համագումարում Բուխարինը հանդես է գալիս տրոցկիստական սխեմայով: Հակառեմբերի ուբերին նորից ու նորից պնդում է Ռուսաս-

տանում սոցիալիզմի հաղթանակի անհնարինությունը։

1918 թիվ—Բուխարինը «ձախ կոմունիզմի» լիդերն է։ Այդ եպիզոդն ամենայն մանրամասնությամբ քննության առնվեց դատական նիստում։

1918 թվի հոկտեմբերի 18-ին Մոսկվայի խորհրդի պլենումում Բուխարինը հայտարարում է իր «ձախ կոմունիզմը» սխալ լինելու մասին։ Մենք գիտենք, որ դատարանում Բուխարինը պետք է խոստովաներ, որ ինքը գործնականում ակտիվ կերպով պայքարել է Բրեստի դաշնագրի վիժեցման համար։

1919 թիվ— կուսակցության 8-րդ համագումար—Բուխարինը նորից հանդես է գալիս ազգերի ինքնորոշման իրավունքը ճանաչելու դեմ։

Այնուհետև գալիս են կուսակցության 9-րդ և 10-րդ համագումարները, որոնց Բուխարինն անփոփոխ վարում է «իր» գիծը՝ ուղղված կուսակցության դեմ, Լենինի դեմ, Ստալինի դեմ։

1921 թվին Բուխարինը, յելնելով Տրոցկու շահերից, գրավում է բուֆերի դիրք, դավաճանորեն հրահրելով դիսկուսիան,—Լե-



նինի արտահայտությամբ ասած— նրա վրա ածելով «բուֆերային նավթ»։

Հակալենինյան Փրակցիայի մեջ Բուխարինը հանդես է գալիս Սերեբրյակովի, Ռադեկի, Կրեստինսկու, Պյատակովի և այլ տրոցկիստների հետ միասին։

1920 թվի վերջը—1921 թվի սկիզբը—դիսկուսիա յե տեղի ունենում պրոֆմիությունների մասին։ Ցեկկիրը պատրաստվում է անցնել նոր տնտեսական քաղաքականության։ Բուխարինը հանդես է գալիս «բուֆերի» դերում, այնուհետև ամբողջապես անցնում է Տրոցկու դիրքերի վրա։ Իսկ 10-րդ համագումարում հայտարարում է, թե «հանրապետությունը մազից է կախված»։

1922 թվին Լենինը ջախջախում է Բուխարինին՝ արտաքին առևտրի մենաշնորհը վիժեցնելու նրա փորձի համար։ Լենինն ուղղակի մերկացնում է Բուխարինին—որպես սպեկուլյանտի, մանր բուրժուայի, որպես գյուղացիության կուլակային վերնախավի շահերը պաշտպանողի։ (Լենին, հատ. 27, եջ 381)։

1923—24 թ. թ.—Բուխարինը բլոկ է կազմում Կամենևի ու Զինովյեվի հետ, ընդդեմ ընկեր Ստալինի։

1925 թիվ — *Բուխարինի «Հարստացեք» կուլակային լոզունգը:*

1928 թիվ—*Բուխարինը կուսակցության Կենտկոմի պլենումում հայտարարում է, վոր տարաձայնություններ չունի կուսակցության հետ և միաժամանակ բանակցություններ է վարում ու գաղտնի համաձայնության մեջ է մտնում Կամենևի հետ: Գրում է «Տնտեսագետի դիտողությունները»:*

1929 թիվ—*Բուխարինը «Պրավդա»-յում հայտարարում է իր հայացքների սխալ լինելու մասին: Այժմ, դատավարության ընթացքում, նա ցույց տվեց, վոր այդ ևս տակտիկական մանևր է յեղել, վոր այն ժամանակ,* 1929 *թվին էլ, նա նույնպես ստում էր: Վորովհետև հենց ճիշտ այդ ժամանակ է կազմավորվել ընդհատակյա կազմակերպությունը, վորը զենքը ձեռքին սկսեց հանդես գալ Խորհրդային իշխանության դեմ:*

*Հիմնավորելու համար, յես ձեզ կհիշեցնեմ Բուխարինի, Ռիկովի, վերջապես Իվանովի ցուցմունքներն այն մասին, թե Բուխարինն ինչպես էր հրահրում պայքարը Հյուսիսային Կովկասում, թե ինչպես էր աշակերտ և այդ գործում իր համագործակից Սլեպկովի միջոցով նա կուլակային ապստամբություններ էր կազմակերպում Խորհրդային իշխանության դեմ, թե ինչպես Յակովենկոյին ուղարկում էր Սիբիր, թե ինչպես դրանց բոլորին հաջողվեց կուլակային ապստամբություն հրահրել Բիյսկի օկրուգում և այլ տեղերում: Կհիշեցնեմ, վոր հենց նույն այդ ժամանակ Բուխարինը հանդես գալով մամուլում, ստում էր. «Բոլոր ջանքերը գործ կդնենք՝ ամբողջ կուսակցության հետ միասին վճռական պայքար մղելու համար բոլոր թեքումների դեմ»: Բուխարինը ստում էր նաև այստեղ:*

1929 թվի դեկտեմբերի 15-ին *Բուխարինը «Պրավդա»-յում զետեղում է մի հոդված, վորի վերջում թվարկում և դատապարտում է իր սխալները: Յեվ միևնույն ժամանակ նա ընդհատակյա խոսակցություններ է վարում Կամենևի հետ:*

*Նա բլոկ կնքեց բոլշևիզմի ամենավոխերիմ, մերկացված թշնամիների հետ, վորոնք դրանից կարճ ժամանակ առաջ՝* 1927 *թվի նոյեմբերին Մոսկվայի և Լենինգրադի փողոցներում հակախորհրդային դեմոնստրացիայով դուրս յեկան Խորհրդային իշխանության դեմ:*

1930 *թվին Բուխարինը նորից դիմում է*

տալիս կենտկոմ և ընդունում է իր սխալները: Իսկ գործնականում—դուք այդ լսեցիք Բուխարինի ցուցմունքներից — գործնականում նա հենց այդ ժամանակ բանակցություններ է վարելիս յեղել Սեմյոնովի հետ՝ մեր կուսակցության ու կառավարության ղեկավարների դեմ տեռորիստական ակտ կազմակերպելու մասին:

1933 թվի հունվարին—Բուխարինը Համ. Կ(բ)Կ կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումում («Պրավդա» № 14), հանդես է գալիս ճառով, վորի մեջ պահանջում է խիստ դատաստան տեսնել Ա. Պ. Սմիրնովի խմբավորման նկատմամբ, խոսում է իր աջ-ոպորտունիստական միանգամայն սխալ ընդհանուր-քաղաքական դիրքավորման մասին, կուսակցության, նրա ղեկավարության հանդեպ, կուսակցության կենտրոնական Կոմիտեյի հանդեպ, բանվոր դասակարգի ու յերկրի հանդեպ իր կատարած հանցանքի մասին:

Իսկ գործնականում այդ՝ «աջ-տրոցկիստական բլոկի» կազմավորման առաջին տարիներ, բլոկ՝ վորը ձեռնամուխ յեղավ այնպիսի խնդիրների կատարման, ինչպես տեռորը, լրտեսությունը, դիվերսիան, վնասարարությունը, հայրենիքի դավաճանությունը,



ազգային հանրապետությունների անջատումը ՍՍՀՄ-ից:

1934 թվի սկիզբը—կուսակցության 17-րդ համագումար— Բուխարինի յելույթը, վորի մեջ նա հավանություն է տալիս «բոլոր ոպոզիցիաների և աջ ոպոզիցիայի՝ վորպես գլխավոր վտանգի—այսինքն հենց այն խմբավորման անողոք ջախջախմանը, վորին յես մի ժամանակ պատկանում եյի»:

Իսկ միևնույն ժամանակ բոլոր ուժերը մոբիլիզացիայի յե յենթարկում, ուժեղացնելու համար իր խմբի հանցավոր գործողությունները, վորն արդեն վեր է ածվել սոսր լրտեսների, մարդասպանների, հետախույզների մի խմբի:

1936 թվի սկիզբը.— Բուխարինն «Իզվեստիա»-յում զետեղված հոդվածի մեջ ռուս ժողովրդին անվանեց «Օբլոմովների ազգ»: «Իզվեստիա»-յի 1936 թվի փետրվարի 14-ի համարում Բուխարինը հայտարարում է իր այդ ակնդման սխալ լինելու մասին:

Այսպիսին է Բուխարինը — այդ կեղծավոր, կեղծ, խորամանկ նատուրան: Այդ բարեպաշտորեն - դիշատիչ ու հարգանքաչար մարդը, այդ — ինչպես ասել է Մաքսիմ Գորկին «Նախկին մարդկանց» պատկե-

բարբառի հերոսներից մեկի մասին,— «աղվեսի ու գայլի անիծյալ խառնուրդը»:

Ավելի լավ չեն նաև մյուս — նույնպես «հերոսները»:

Մեղադրյալ Ռիկով: Մինչև բոլշևիկների կուսակցության մեջ մտնելը Ռիկովը Սարատովում մտնում էր էսէրների և սոցիալ–դեմոկրատների միացյալ կուսակցության մեջ:

1909—1911 թ. թ. — Ռիկովը կիսատրոցկիստ է, կիսալիկվիդատոր:

Ապրիլյան կոնֆերանսի շրջանում Ռիկովը և Կամենևը կողմնակից են հեղափոխական դեմոկրատիայի «կենդանի ուժերի» միավորմանը, այսինքն՝ կողմնակից են էսէրների ու մենշևիկների դաշինքին:

1917 թվի հոկտեմբերին Կամենևի և Զինովևի հետ միասին Ռիկովը դասալքում է:

1917 թվի դեկտեմբերին Ռիկովը կոչնչում է խորհրդային իշխանության ամուր չլինելու մասին, ասելով, թե՝ «զուտ բոլշևիկյան իշխանությունը չի կարող պահպանվել հետամնաց մի երկրում, այն ժամանակ, յերբ Յեվրոպայում տեղի չունեցավ սոցիալիստական հեղափոխություն»:

1920 թվին Ռիկովը սապրոնովականնե-



րի հետ միասին դուրս է գալիս Լենինի դեմ, հանուն կոլեգիալության:

Ռիկովը դեմ է ԳՈԷԼՐՈ–ի Լենինյան պլանին, նա գլխովին խրվել էր օրիվատելական «ռեալիզմի» մեջ, մինչև ականջները խրվել էր հնամոլության մեջ (ինչպես նրա մասին այն ժամանակ Վ. Ի. Լենինին գրում էր ընկեր Ստալինը):

Իսկ հետո՞: Հետո 1928, 1929, 1932 թ. թ. — բլոկներ, կենտրոններ, դավադրություններ, դավաճանություն:

Մյուս մեղադրյալներն ավելի լավը չեն:

Ահա հին տրոցկիստ ու գերմանական լրտես Կրեստինսկին, վորն իր դավաճանական կարյերան սկսել է դեռևս Վլադիմիր Իլյիչ Լենինի կենդանության ժամանակ: Կրեստինսկին լրտեսական տեղեկություններ է հաղորդում գերմանական հետախուզությանը և ամեն տարի գերմանական ռեյխսվերից ստանում է 250–հազարական մարկ՝ վոսկով, հօգուտ ընդհատակյա տրոցկիստական աշխատանքի: Ահա նույնպես մոլի տրոցկիստ Ռոզենհոլցը, վոր գերմանական լրտես է յեղել 1923 թվից և անգլիական լրտես՝ 1926 թվից:

# ԴԱՎԱԴՐՈՒԹՅՈՒՆ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԴԵՄ 1918 ԹՎԻՆ

*Ես անհրաժեշտ եմ համարում համառոտակի կանգ առնել 1918 թվին Վլադիմիր Իլյիչ Լենինի դեմ կազմակերպված դավադրության հանգամանքների՝ այստեղ կատարված հետազոտության վրա:*

*Ե՛վ նախնական հետաքննության ժամանակ, և՛ դատարանում Բուխարինը փորձում էր ամեն կերպ խույս տալ 1918 թվից, խուսափել պատմության հանդեպ, բանվոր դասակարգի հանդեպ, ամբողջ ազնիվ մարդկության հանդեպ ունեցած պատասխանատվությունից այն հրեշավոր հանցագործությունների համար, վոր կազմակերպել էր Բուխարինը «ձախ» ու աջ եսերների հետ միասին, Տրոցկու ու նրա խմբի հետ միասին, և մասամբ իրականացրել:*



*Հարկավոր է վերհիշել փաստերը, իրադրությունն ու պայմանները 1918 թվին, վորպեսզի ըստ արժանվույն գնահատել հեղափոխության դեմ Տրոցկու և Բուխարինի դժոխային վոճրագործության վողջ խորությունը, նրանց դավաճանության վողջ խորությունը:*

1918 թիվ: *Երիտասարդ Խորհրդային Ռուսաստանը լարում է իր բոլոր ուժերը՝ հաղթահարելու համար այն վիթխարի դըժվարությունները, վորոնք կանգնեցին դեպի սոցիալիստական հեղափոխության հաղթանակների հաստատումն ու ամրապնդումը տանող նրա ճանապարհին:*

*Այդ պայմաններում պայքարը խաղաղության համար պայքար էր հանուն պրոլետարական հեղափոխության ամբողջ ապագայի, վորի ճակատագիրը բառիս բուն իմաստով խաղաթղթի վրա յեր դրված:*

*Այդ պայմաններում պատերազմի ու խաղաղության հարցն ըստ եյության հանգում էր մեկ հարցի* — պետք է լինի, թե՞ չլինի խորհրդային իշխանությունը, խորհրդային պետությունը, խորհրդային յերկիրը:

*Լենինյան հանճարեղ ստրատեգիան այդ*

հարցը լուծեց դրականորեն: Պատմությունը հաստատեց այդ լուծման ճշտությունը: Նա ասաց. «պետք է լինի»:

Լենինիզմը սովորեցնում է ոչ միայն հարձակման արվեստը, այլև նահանջի արվեստը:

«...Չի կարելի, — գրում էր Լենինը, — հաղթել, առանց սովորելու ճիշտ հարձակվելն ու ճիշտ նահանջելը»: (Հատոր 25, էջ 177):

Ընկեր Ստալինն այդ առթիվ ասել է.

«Այսպիսի ստրատեգիայի նպատակն է՝ ժամանակ շահել, քայքայել հակառակորդին և ուժեր կուտակել՝ հետո հարձակման անցնելու համար:

Այսպիսի ստրատեգիայի օրինակ կարելի յե համարել Բրեստի դաշնագրի կնքումը, վորը կուսակցությանը հնարավորություն տվեց ժամանակ շահել, օգտագործել իմպերիալիզմի բանակում յեղած ընդհարումները, քայքայել հակառակորդի ուժերը, իր կողմը պահել գյուղացիությանը և ուժեր կուտակել՝ նախապատրաստելու համար հարձակումը Կոլչակի ու Դենիկինի դեմ»:

Այդ ստրատեգիան, Լենինի- Ստալինի



հանճարեղ ստրատեգիան լիովին արդարացրեց իրեն: Այն՝ նոր Ռուսաստանը և Խորհրդային իշխանությունը փրկեց անխուսափելի կործանումից:

1924 թվին ընկեր Ստալինն այդ առթիվ հիշեցրեց.

«Այժմ նույնիսկ վերջին հիմարը» տեսնում է, — ասում էր Լենինը Բրեստի դաշնագրից յերեք տարի հետո, — «վոր Բրեստի դաշնագիրն» այնպիսի մի զիջում էր, վոր ուժեղացրեց մեզ և ջլատեց միջազգային իմպերիալիզմի ուժերը»: («Լենինիզմի հարցերը», էջ՝ 57):

Հայտնի յե, վոր Տրոցկին և Բուխարինն իրենց կողմնակիցների հետ միասին, ամեն կերպ աշխատում եյին վիժեցնել Բրեստի դաշնագիրը: Տրոցկին և «ձախ» եսերները, գեներալ Գոֆմանի հետ բանակցություններ վարելիս, իրենց պահում եյին ինչպես պրովոկատորներ: «Ձախ կոմունիստները» Բուխարինի գլխավորությամբ, հուր ու կրակ եյին թափում խորհրդային կառավարության խաղաղ քաղաքականության դեմ, կառավարության՝ վորի գլուխ կանգնած եյին Լենինը, Ստալինն ու Սվերդ-

լովը, պահանջելով խզել բանակցությունները և հայտարարել «հեղափոխական պատերազմ»:

Իրենց թունը, իսկ ըստ էության պրովոկատորական ճառերով ու լոզունգներով բուխարինականներն ու տրոցկիստները փորձում էին մեր կուսակցությունը շեղել լենինյան ուղուց:

Նույնիսկ նախնական քննության ժամանակ, 1937 թվի հունիսի 2-ի ցուցմունքների մեջ Բուխարինը փորձում էր թաքցնել Բրեստի դաշնագրի շրջանում Լենինի — վորպես խորհրդային կառավարության ղեկավարի — դեմ իր մղած պայքարի իսկական բնույթը:

Հետաքննությունը լիակատար կերպով հաստատեց — և ես անհրաժեշտ եմ համարում այդ մասին ձեզ այստեղ հիշեցնել, ընկեր դատավորներ, — վոր 1918 թվին, Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, Բրեստի դաշնագրի կնքման շրջանում, Բուխարինն ու նրա՝ այսպես կոչված «ձախ կոմունիստների» խումբը և Տրոցկին՝ իր խմբով, «ձախ» էսէռների հետ միասին, դավադրություն էին կազմակերպ-



ել Լենինի — վորպես Խորհրդային կառավարության ղեկավարի — դեմ:

Բուխարինը և մյուս դավադիրները, — ինչպես այդ երևում է հետաքննության նյութերից — նպատակ ունեյին վիժեցնել Բրեստի դաշնագիրը, տապալել Խորհրդային կառավարությունը, ձերբակալել և սպանել Լենինին, Ստալինին ու Սվերդլովին և նոր կառավարություն կազմել բուխարինականներից, վորոնք այն ժամանակ դիմակավորվելու համար իրենց անվանում էին «ձախ կոմունիստներ», տրոցկիստներից և «ձախ» էսէռներից:

Մենք հիշում ենք այն վկաներին, վորոնք անցան դատարանի առջևով, լավ ենք հիշում նրանց ցուցմունքները, մենք նրանց տեսանք, մենք նրանց լսեցինք: Մենք հիշում ենք թե, նրանց խոսքերն ինչպես ծանր արճճի նման ընկնում էին Բուխարինի, — լենինյան Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի դեմ պրովոկատորական պայքարը վոգեշնչողի, — գլխին, Բուխարինի, վորը — ինչպես այդ լիակատար ակներևությամբ հաստատեց նաև դատաքննությունը — Խորհրդային պետության դեմ դավադրության ու ապստամբության կազ-

մակերպողն է խորհրդային կառավարության ղեկավարների — ընկերներ Լենինի, Ստալինի և Սվերդլովի սպանությունը հրահրողը:

Դուք այստեղ հիշում եք Կամկովի ցուցմունքները: Կամկովը «ձախ» էսէռների կուսակցության կենտկոմի աչքի ընկնող ղեկավարներից մեկն էր: Կամկովը ցուցմունք տվեց, որ ինքը 1918 թվին խոսակցություն է ունեցել Բուխարինի հետ՝ Բրեստի դաշնագրի հարցի վերաբերյալ, որ պայքարն այդ հարցի շուրջը, — Բուխարինի ասելով, — ընդունում է չափազանց սուր ձևեր: Բուխարինը Կամկովին ասել էր սուր ձևերի մասին, այն մասին, որ «ձախ» կոմունիստների» շարքերում քննության է առնվում նոր կառավարության ստեղծման հարցը: Ըստ որում, — ասաց Կամկովը, — Բուխարինը Պյատակովին հիշատակել էր որպես նոր կառավարության ղեկավարի հնարավոր թեկնածու և հայտարարել էր, որ ինքը՝ կառավարության փոխարինումը, յենթադրում է խորհրդային կառավարության ամբողջ կազմը՝ Լենինի գլխավորությամբ, ձերբակալելու միջոցով:

Բուխարինն այդ չժխտեց: Բայց Բու-



խարինը հրաժարվում է մեր առաջնորդների սպանության պլանից:

Իրեն արդարացնելու համար ինչպիսի ապացույցներ ներկայացրեց նա այդ հարցի մասին: Ոչ մի ապացույց, բացի մերկ ժխտումից: Նրան այստեղ մերկացրեց Յակովլևան, նրան այստեղ մերկացրեց Օսինսկին, նրան այստեղ մերկացրեց Մանցևը, նրան այստեղ մերկացրեց Կարելինը:

Բուխարինը ժխտում է: Բայց վերջիվերջո չէ՞ որ չի կարելի արդամենտ համարել վաչնչով չպատճառաբանված ժխտումը, մանավանդ, որ այդ ժխտումը հակասում է իրերի բուն տրամաբանությանը:

Յեթե այդ փաստը — Լենինի, Ստալինի և Սվերդլովի սպանության պլանը — չկար, ապա ինչո՞ւ չէր անհրաժեշտ լռել այդ մասին ասել և՛ Կարելինին, և՛ Յակովլևային, և՛ Օսինսկուն, և՛ Մանցևին — մարդկանց, վորոնց համար այժմ ձեռնտու չէ խոստովանել այդպիսի խայտառակ ու այդպիսի սարսափելի մի փաստ, հայրենիքի հանդեպ կատարած այդպիսի մի հրեշավոր հանցագործություն:

Բուխարինը խոստովանեց, որ ինքը «ձախ կոմունիստների» ամբողջ խմբի, Տր-

բոցկու ու նրա խմբի և «ձախ» էսերների հետ միասին, ծրագրել էին Լենինի, Ստալինի ու Սվերդլովի գլխավորած խորհրդային կառավարության բռնի կերպով տապալումը և նույնիսկ Լենինի, Ստալինի և Սվերդլովի ձերբակալությունը:

Բայց Բուխարինը գիտե՞ արդյոք, թե ինչ է նշանակում բռնի տապալում: Գիտե՞ արդյոք Բուխարինը, թե ինչ են նշանակում ձերբակալությունները՝ կապված բռնի տապալման խնդրի հետ: Բուխարինը գիտե՞ արդյոք, որ այն մարդիկ, որոնք դիմում են բռնի տապալման ու բռնի ձերբակալության, դրանով իսկ դիմում են բռնության, դրանով իսկ դիմում են նաև սպանության:

Բուխարինը խոստովանեց, և այն էլ— ինչպես դուք տեսաք դատական քննության ընթացքում, միայն կիսախոստովանեց, որովհետև էլ շարժվելու տեղ չունի — որ 1918 թվին Բուխարինը Խորհրդային իշխանությունը հայտարարում էր ձևական և առաջարկում էր լիկվիդացիայի ենթարկել այն:

Հետաքննությունը հաստատել է, որ 1918 թվին Բուխարինը և Տրոցկին էսերնե-



րի հետ բլոկ կազմեցին, միասին պայքարելու խորհրդային կառավարության դեմ, որին այն ժամանակ գլխավորում էին Լենինը, Ստալինը և Սվերդլովը, որ նրանք զինված ապստամբության էին ձեռնարկում, որ նրանք ուզում էին ձերբակալել և սպանել Լենինին, Ստալինին և Սվերդլովին:

Ապացուցվա՞ծ է այդ, թե ոչ:

Ապացուցված է լրիվ: Ապացուցված է իրեն՝ Բուխարինի ցուցմունքներով և Յակովլևայի ու Կարելինի, Կամկովի, Մանցևի և Օսինսկու ցուցմունքներով:

Բուխարինը ժխտում է սպանության նախապատրաստությունը, բայց ինչպե՞ս է ժխտում: Ցես վկաներին ձեզ, ընկեր դատավորներ, խորհրդակցության սենյակում աչքի անցկացնել մեր դատական քննության համապատասխան նյութերը, արձանագրությունը, որպեսզի նրա համար, որպեսզի ամբողջ պարզությամբ հիշեք Բուխարինի կողմից այդ փաստը ժխտելու մեթոդը:

Ահա այդ խոստակցությունը: Բուխարինը խոստովանում է, որ ցեղել է այդ դավադրության կազմակերպիչներից մեկը:

Նրան հարցնում են՝ Լենինի, Ստալինի

րոցկու ու նրա խմբի և «ձախ» էսէռների հետ միասին, ծրագրել էին Լենինի, Ստալինի ու Սվերդլովի գլխավորած խորհրդային կառավարության բռնի կերպով տապալումը և նույնիսկ Լենինի, Ստալինի և Սվերդլովի ձերբակալությունը:

Բայց Բուխարինը գիտե՞ արդյոք, թե ինչ է նշանակում բռնի տապալում: Գիտե՞ արդյոք Բուխարինը, թե ինչ են նշանակում ձերբակալությունները՝ կապված բռնի տապալման խնդրի հետ: Բուխարինը գիտե՞ արդյոք, որ այն մարդիկ, որոնք դիմում են բռնի տապալման ու բռնի ձերբակալության, դրանով իսկ դիմում են բռնության, դրանով իսկ դիմում են նաև սպանության:

Բուխարինը խոստովանեց, և այն էլ— ինչպես դուք տեսաք դատական քննության ընթացքում, միայն խոստովանեց, որովհետև էլ չարժվելու տեղ չունի — որ 1918 թվին Բուխարինը Խորհրդային իշխանությունը հայտարարում էր ձևական և առաջարկում էր լիկվիդացիայի ենթարկել այն:

Հետաքննությունը հաստատել է, որ 1918 թվին Բուխարինը և Տրոցկին էսէռնե-



րի հետ բլոկ կազմեցին, միասին պայքարելու խորհրդային կառավարության դեմ, որին այն ժամանակ գլխավորում էին Լենինը, Ստալինը և Սվերդլովը, որ նրանք զինված ապստամբության էին ձեռնարկում, որ նրանք ուզում էին ձերբակալել և սպանել Լենինին, Ստալինին և Սվերդլովին:

Ապացուցվա՞ծ է այդ, թե ոչ:

Ապացուցված է լրիվ: Ապացուցված է իրեն՝ Բուխարինի ցուցմունքներով և Յակովլևայի ու Կարելինի, Կամկովի, Մանցևի և Օսինսկու ցուցմունքներով:

Բուխարինը ժխտում է սպանության նախապատրաստությունը, բայց ինչպե՞ս է ժխտում: Յես կխնդրեյի ձեզ, ընկեր դատավորներ, խորհրդակցության սենյակում աչքի անցկացնել մեր դատական քննության համապատասխան նիստի արձանագրությունը, նրա համար, որպեսզի ամբողջ պարզությամբ հիշեք Բուխարինի կողմից այդ փաստը ժխտելու մեթոդը:

Ահա այդ խոստովանությունը: Բուխարինը խոստովանում է, որ յեղել է այդ դավադրության կազմակերպիչներից մեկը:

Նրան հարցնում են՝ Լենինի, Ստալինի

և Սվերդլովի ձերբակալության մասին դուք բացահայտ կերպով խոսե՞լ եք:

«ԲՈՒԽԱՐԻՆ.— Ձերբակալության մասին խոսակցություն յեղել է, բայց վոչ ֆիզիքական վոչնչացման մասին: Այդ յեղել է վոչ թե մինչև Բրեստի հաշտությունը յեղած ժամանակաշրջանում, այլ հետո: Այդ ժամանակաշրջանում յես մի խոսակցություն ունեցա Պյատակովի հետ, յերբ յեկան Կարելինը և Կամկովն ու հայտարարեցին, թե նրանք առաջարկում են կազմել նոր կառավարություն:

ՀԱՐՑ.— Յե՞րբ է յեղել այդ:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Այդ յեղել է մինչև Բրեստի հաշտությունը: Նրանք առաջարկեցին Լենինին 24 ժամով ձերբակալելու միջոցով կառավարություն կազմել:

ՀԱՐՑ.— Յերբ տապալում են կառավարությունը և ձերբակալում են նրան, գործադրո՞ւմ են բռնի միջոցներ:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Այո:

ՀԱՐՑ.— Դուք նկատի ունեյիք ձերբակալության ժամանակ բռնի միջոցներ գործադրել: Այդ ճի՞շտ է, թե վոչ:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Ճիշտ է:

ՀԱՐՑ.— Բայց բռնի միջոցներն ին-



չո՞ւմն են կայանում: Դուք ճշտությամբ սահմանեցի՞ք այդ:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Վոչ, չսահմանեցի:

ՀԱՐՑ.— Նշանակում է՝ վորոշեցիք այնպես, ինչպես թույլ կտան և կհրամայեն հանգամանքնե՞րը:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Այո, միանգամայն ճիշտ է:

ՀԱՐՑ.— Իսկ հանգամանքները կարո՞ղ են հրամայել գործել խիստ վճռականորեն:

ԲՈՒԽԱՐԻՆ.— Այո:

Դրանից արվող հետևությունը պարզ է, — յենթադրվում եր տապալել կառավարությունը, դրա համար ձերբակալել կառավարությունը — Լենինին, Ստալինին, Սվերդլովին, գործադրել բոլոր այն միջոցները, վոր կարող են թելադրել հանգամանքները և պայքարի պայմանները — վորոնք մղվում են հանուն կառավարության տապալման: Պայքարն ամենասուր ձևի յեր, և քանի վոր, — յեթե կանգնել Բուխարինի տեսակետի վրա, ինչպես նա ասում եր, — չի յեղել խոսակցություն սպանության մասին, ապա չե՞ վոր հենց փաստը, հենց կառավարության տապալման խնդիրը, հենց այն կառավարության ղեկա-

վարների ձերբակալման անհրաժեշտությունը, որին տապալելու նպատակ էին դրել դավադիրները, — միանգամայն բնականորեն ասում է, որ ղեկավարների սպանությունից, յենթադրվող սպանությունից նրանք հրաժարվել և այդ չանել ոչ մի կերպ չէին կարող:

Դեպքերի ամբողջ տրամաբանությունը, այդ պայքարի ամբողջ իմաստը, այն մթնոլորտի ամբողջ դաժանությունը, որտեղ ընթանում էր այդ պայքարը, հենց այն հարցի ամբողջ սրությունը, թե արդյոք պետք է լինի՞ Բրեստի հաշտությունը, այսինքն՝ արդյո՞ք պետք է լինի՞ խորհրդային յերկիրը, այն յերկիրը, որը սոցիալիստական հասարակություն է կառուցում, թե՞ չպետք է լինի Բրեստի հաշտությունը, չպետք է լինի խորհրդային յերկիրը, որին նրանք իբրև «ձեռականի» յենթադրում էին հանձնել թշնամու կողմից ջախջախելուն, — այս բոլորն ամբողջ լրջությամբ խոսում է այն մասին, որ գործը վերաբերում է իսկական պայքարին, որն այդպիսի դեպքերում միշտ կապված է նաև այնպիսի միջոցի կիրառման անհրաժեշտության հետ, որի արդյունքը հանդիսանում է մահը,



սպանությունը: Ահա թե ինչու յես ասում եմ, ինձ համար ոչ թե քրեյագիտության տեսակետից, — որովհետև այժմ, ա՛յն ժամանակից 20 տարի անցնելուց հետո, յերբ կատարվեց այդ հանցագործությունը, մենք Բուխարինին չենք ներկայացնում ինքնուրույն մեղադրանք, — այդ նշանակություն ունի, որպեսզի գնահատել այն կապը, որը գոյություն ունի մարդասպան և հակահեղափոխական Բուխարինի դավադրական գործունեության, նրա գործակիցների և այն ամենի միջև, ինչ որ նրանք անում էին հետագայում: Այդ բոլորը նշանակություն ունի ցույց տալու համար, որ Բուխարինը նաև այժմ պատմական հետաքրքրություն և նշանակություն ունեցող հարցի շուրջն ի վիճակի չէ, չի ուզում խոստովանել այդ բոլոր հանցագործությունները, որ նա իրականում կատարել է խորհրդային յերկրի դեմ, խորհրդային իշխանության և խորհրդային ժողովրդի դեմ:

Այժմ ամբողջովին հայտաբերված է նաև այն հրեշավոր հանցագործությունը, որ տեղի յե ունեցել 1918 թվի օգոստոսի 30-ին: Յես նկատի ունեմ Վլադիմիր Իլյիչ

Լենինի կյանքի դեմ 1918 թվի օգոստոսի 30-ին նախապատրաստել էին տեռորիստ Կապլանի կատարած մահափորձը: Կարելինն այստեղ հաստատեց, որ Լենինի դեմ տեռորիստական ակտի հարցը 1918 թվին բարձրացրել էր ոչ այլ ոք, քան ինքը Բուխարինը: Կարելինը պնդում էր, որ Պռոշյանն այդ մասին զեկուցում էր «ձախ» էսէռների կուսակցության կենտրոնի անդամներին: Կարելինը պնդում էր, որ «ձախ կոմունիստների» «այդ տեսակ պահանջը, որ Բուխարինը հայտարարել էր նրանց պարագլուխներին, իր դերը խաղաց Լենինի դեմ տեռորիստական ակտն արագացնելու իմաստով, որ կատարեց աջ էսէռների կուսակցության կենտրոնը»: Այդ հրեշավոր հանցագործությունը փաստ է:

Օսինսկին Ստուկովի խոսքերի հիման վրա ցուցմունք տվեց, որ նա, Ստուկովը, նույն կարծիքին էր, ուներ նույնպիսի պատկերացում 1918 թվի օգոստոսի 30-ի հանցագործության մասին:

«1918 թվի վերջին, — այստեղ ցուցմունք էր տալիս Օսինսկին, — Ստուկովը, որը Բուխարինի հետ միասին կապված էր էսէռների հետ, ասաց ինձ,



որ Լենինի վրա աջ էսէռուհի Ֆանյա Կապլանի կրակոցը կատարվեց ոչ միայն աջ էսէռների ղեկավարության ցուցումով, այլև հանդիսացավ այն ձեռնարկումների ուղղակի ավարտումը, որ բլոկն իր ժամանակին նշել էր Լենինի, Ստալինի և Սվերդլովի ֆիզիքական ոչնչացման համար»: (Հատ. 44, գործ-թերթ 89):

Այս ցուցմունքները բավականաչափ համոզիչ կերպով խոսում են այն ստոր, դավաճանական, դիվային աշխատանքի մասին, որ կատարում էր Բուխարինը, այդ պատենտավոր կեղծավորը և ճիվաղը:

Բուխարինի վարքը և հենց Բուխարինի բնութագիրն ավարտելու համար պետք է ասել, որ այդ մարդը կեղծավորությամբ և նենգությամբ գերազանցեց ամենախարդախ, հրեշավոր հանցագործությունները, որ յեղել են մարդկային պատմության մեջ:

Այստեղ դատարանում նա ամբողջովին ցույց տվեց իրեն:

Մենք քայլ առ քայլ, տարի առ տարի հետևենք Բուխարինի քաղաքական կյանքին:

Քանի՜-քանի՜ անգամ Բուխարինը յերդվում էր ԼԵՆԻՆԻ անունով՝ միայն նրա համար, վորպեսզի իսկույն և յեթ ավելի լավ խաբի ու դավաճանի և՛ կուսակցությանը, և՛ յերկրին, և՛ սոցիալիզմի գործին:

Քանի՜-քանի՜ անգամ Բուխարինը Հուդա-մատնիչի՝ համբույրով հպվում էր ուսուցչին:

Բուխարինը հիշեցնում է Վասիլիյ Շույսկուն և Հուդա Իսկարիովտացուն, վորը համբույրով էր մատնում:

Ցեվ Նիկոլայ Իվանովիչ Բուխարինի սովորությունները ել ճիշտ նույնն են, ինչ վոր Վասիլի Իվանովիչ Շույսկունը, ինչպես նրան պատկերում է մեր հուչակավոր գրող Ոստրովսկին:

«Վասիլին, աչքի լույս Իվանիչը,
Ինչ ել ասի, վողջը սուրբ է նրա մոտ:
Դիտավորյալ սրիկայություն անել է
պատրաստվում,
Կամ աշկարա վատություն անում,
Իսկ ինքը, տես, հառաչում է
թթու մռութով
Ու ասում՝ «Սուրբ գործ է,
յեղբայրներ...»:

Այդպես է և Բուխարինը, — վնասարարություն, դիվերսիաներ, լրտեսություն, սպանություններ է կազմակերպում, բայց նրա տեսքը հեզ է, սուսուփուս, համարյա սուրբ և կարծես թե Նիկոլայ Իվանովիչի բերանից լսվում են Վասիլիյ Իվանովիչ Շույսկու հեզաբարո խոսքերը, — «Սուրբ գործ է, յեղբայրներ»:

Ահա հրեշավոր կեղծավորության, դավաճանության, ճիզվիտության և անմարդկային ստորության գագաթնակետը:

# ԼՐՏԵՍՆԵՐԸ, ԴԱՎԱՃԱՆՆԵՐԸ, ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՌԵՍՏԱՎՐԱՏՈՐՆԵՐԸ

Դատական քննությունը հայտաբերեց և լիակատար պարզությամբ ապացուցեց, որ «աջ – տրոցկիստական բլոկն» իրենից ներկայացնում էր այն մի քանի օտարերկրյա պետությունների հետախուզության իսկական գործակալությունը, որոնք այդ բլոկի միջոցով, այդ դավադրական խմբակի միջոցով իրականացնում էին լրտեսությունը, վնասարարությունը, դիվերսիաները, տեռորը, ԽՍՀՄ-ի ռազմական հզորության քայքայումը, այդ պետությունների պրովոկացիոն – ռազմական հարձակումը ԽՍՀՄ-ի վրա, ԽՍՀՄ-ում գոյություն ունեցող կարգի տապալումը, կապիտալիզմի և բուրժուազիայի իշխանության վերականգ



նումը ԽՍՀՄ-ում, ԽՍՀՄ-ի մասնատումը և վերև մատնանշված պետությունների օգտին Ուկրաինայի, Բելոռուսիայի, Միջին-Ասիական հանրապետությունների, Վրաստանի, Հայաստանի Ադրբեջանի և Պրիմորյեյի անջատումը:

Այդ հետաքննության ժամանակ հաստատված է, որ բլոկն ունեցել է իր իսկական տերերը հանձին Տրոցկու և օտարերկրյա հետախուզությունների, որ նրա ամբողջ հանցավոր գործունեությունն ընթացել է Ճապոնիայի, Գերմանիայի և Լեհաստանի գլխավոր շտաբների անմիջական ղեկավարությամբ և նրանց մշակած պլանների համաձայն:

Ահա Չերնովի ցուցմունքները: Չերնովը ոստիկանության կամ ոստիկանական չինովնիկի միջոցով Բեռլինում կապվում է Օբերհաուզի հետ: Օբերհաուզը,—ասում է Չերնովը,—ինձ ասաց, որ գերմանական հետախուզությունը պատշաճ միջոցներ է ձեռք առնում խորհրդային իշխանությունը տապալելու համար: Յեվ ապա, դիմելով Չերնովին, Օբերհաուզն ասում է.—«Այ, դուք ձեզ համարում եք օպոզիցիա Խորհըրդային Միությունում, ձեզ հարկավոր է

միավորվել իրրև կազմակերպիչ ուժ: Յեթե դուք ուզում եք վերցնել իշխանությունը, ապա մի՛ խորշեք պայքարի մեթոդներից»: Խոսելով պայքարի մեթոդների մասին՝ Ռեբր Հաուզն առաջարկում է ամրապնդել աջերի կապը գերմանական հետախուզության հետ: Նա խոսում էր այն մասին, որ աջերի ամբողջ կազմակերպությունը կարող է ծառայեցվել գերմանական հետախուզության նպատակներին:

Այստեղ, դատարանում, այն հարցին, թե ովքե՞ր են յեղել տերերը, Չերնովը պատասխանեց.—«Բացի Ռիկովից և գերմանական հետախուզությունից ոչ ոք»: Մի՞թե պարզ չէ, որ այդ, այսպես կոչված՝ «աջ-տրոցկիստական բլոկի» կազմակերպությունն ուրիշ բան չի յեղել, քան մի քանի օտարերկրյա պետությունների մի քանի հետախուզությունների եքսպոզիտուրա:

Մեղադրյալ Շարանգովիչն այստեղ լիովին հաստատեց իր կապը Լեհաստանի գլխավոր շտաբի հետ: Նա հաստատեց, որ ինքը լինելով տեղական՝ բելոռուսական բուրժուական-նացիոնալիստական ընդհատակյա կազմակերպության ղեկավար, իր առաջ խնդիր էր դրել ապահովել լեհական հետախուզու-



թյան և լեհական գլխավոր շտաբի շահերին:

Այդ կազմակերպության հիմնական նպատակնե՞րը: Ինքը Շարանգովիչը դրանք բնորոշել է կարճ,—խորհրդային իշխանության տապալում և կապիտալիզմի վերականգնում, Բելոռուսիայի անջատում Խորհրդային Միությունից՝ ֆաշիստական պետությունների դեմ պատերազմ լինելու դեպքում: Այդ նպատակին հասնելու համար, ինչպես նա ասաց, ընդգծվում էր լեհական գլխավոր շտաբի հետ սերտ կապ հաստատելու անհրաժեշտությունը:

Ահա թե ինչո՛ւ Ռիկովն այստեղ միանգամայն արդարացի կերպով ասաց, որ աջերի բելոռուսական կազմակերպությունն ըստ եյության յեղել է լեհական գլխավոր շտաբի եքսպոզիտուրա: Ռիկովն այստեղ մեզ ասում էր, որ նրան հայտնի յեն յեղել դեռ 1933 թվին Կարախանի վարած բանակցությունները գերմանական ֆաշիստների հետ, որ գերմանական ֆաշիստները, ինչպես այստեղ արտահայտվեց մեղադրյալ Ռիկովը, լիակատար բարյացակամությամբ եյին վերաբերվում աջերի՝ իշխանության անցնելու հնարավորության և որ նրանք

խոստանում էին ամեն կերպ վողջունել և պաշտպանել իշխանության այդ անցումը:

Միանգամայն ակներև է, որ ԽՍՀՄ-ի վրա հարձակվելու պլացդարմի նախապատրաստության և այդ հարձակման դեպքում ԽՍՀՄ-ի դեմ հաղթանակն ապահովելու խնդիրը գերմանական, լեհական և այլ հետախուզությունները դրել էին «աջ-տրոցկիստական բլոկի», վորպես ֆաշիստական հետախուզությունների ուղղակի գործակալության առաջ:

Վերջապես, մենք հիշում ենք Կրեստինսկու ցուցմունքները: Ինչպես թակարդում ընկած մուկ, նա փորձեց արդեն այստեղ, դատավարությունում այս ու այն կողմ նետվել, փնտրելով իր փրկության հնարավոր ուղիները, սակայն դա դուրս յեկավ անհուսալի: Կրեստինսկին խոստովանեց, վոր արդեն 1920—1921 թ. թ. Տրոցկու ցուցումով նա, Կրեստինսկին, ուրիշ տրոցկիստների հետ բանակցություններ էր վարում գեներալ Սեկտի և գերմանական Ռեյխսվերի հետ, նա տարեկան 250 հազար վոսկի մարկով լրտեսական տեղեկություններ էր ծախում Գերմանիայի գլխավոր շտաբին և ապահովում էր գերմանական



ռազմական հետախույզների անարգել մուտքը ԽՍՀՄ-ի սահմանները: Այն ժամանակ ինչի՞ մասին էր խոսքը, յեթե վոչ ԽՍՀՄ-ը գերմանական ֆաշիզմի գաղութը դարձնելու մասին: Թե ինչումն է Ռեյխսվերի հետ այդ համաձայնության էությունը, վորի թելերը ձգվում են մինչև այսպես կոչված «աջ-տրոցկիստական բլոկի» դավաճանությունն ու մատնությունը,— այդ մասին ասաց ինքը Կրեստինսկին: Թույլ տվեք համառոտակի հիշեցնել:

«Մենք ստանում ենք,—ասում է նա,—փողի վոչ մեծ գումար, իսկ նրանք ստանում են լրտեսական ինֆորմացիա, վորը նրանց անհրաժեշտ կլինի ռազմական հարձակման դեպքում: Սակայն չէ՞ վոր գերմանական կառավարությունը,—շարունակում է ուսուցել Կրեստինսկին բաց անելով իր խաղաթղթերը,—մասնավորապես Հիտլերին հարկավոր են գաղութներ, տերիտորիաներ և վոչ թե միայն լրտեսական ինֆորմացիա: Յեվ նա (այսինքն Հիտլերը) պատրաստ է գաղութների փոխարեն,—վորոնց համար պետք է կռվել Անգլիայի, Ամերիկայի և Ֆրանսիայի հետ, բավարարվել Խորհրդային Միության տերիտորիայով»: Հարցը,

ինչպես ասում են, գրված է բոլորովին պարզ: Ամբողջովին բացված են խաղաթղթերը, թեպետ և նշան արած խաղաթղթերը: Նրանք ասում եյին.—«Մենք ձեզ տալիս ենք ոչ միայն լրտեսական տեղեկություններ, այլև հարկավոր րոպեյին մենք ձեզ համար բաց կանենք ճակատը: Դրա համար մեզ փող վճարեցեք, որով մենք կկատարենք մեր հանցավոր, ընդհատակյա տրոցկիստական աշխատանքը: Ինչո՞ւ դուք գաղութների համար կռվեք Անգլիայի, Ամերիկայի և Ֆրանսիայի հետ: Դուք կարող եք ԽՍՀՄ-ն դարձնել ձեր գաղութը: Գանե նրա ծաղկող ծայրամասային հանրապետությունները, օրինակ՝ Ուկրաինան: Ինչո՞ւ: դուք գաղութների համար կռվեք Անգլիայի, Ամերիկայի և Ֆրանսիայի հետ, երբ մենք, ձեր խոնարհ ծառաները, պատրաստ ենք խորհրդային երկիրը ձեզ տալ այն փոքր մարկերի համար, որոնցով դուք մեզ կօգնեք կատարելու մեր ընդհատակյա աշխատանքը»:

Ահա այդ համաձայնության իմաստը:

«Աջ-տրոցկիստական բլոկը»,—այդ ո՛չ միայն վնասարարների, դիվերսանտների, մարդասպանների, լրտեսների գաղափարա-



զուրկ և անսկզբունք բանդա չէ,—այդ օտարերկրյա հետախուզությունների գործակալների զտարյուն բանդա է, այդ բառի իսկական իմաստով: Նա թշնամու համար բաց է անում դարպասը, թաքուն պատուհաններից կրակում է դեպի փողոցները, օգնելով քաղաքները և գյուղերը ներխուժած թշնամուն, աջակցում է իր հայրենիքի պարտությանը:

Կրեստինսկին ասում էր.—«Մենք գնում եյինք ԽՍՀՄ-ում կապիտալիստական հարաբերությունների վերականգնման և այն բուրժուական պետություններին տերիտորիալ զիջումներ անելու, որոնց հետ այդ մասին արդեն պայմանավորվել եյինք»:

Այսպես ասած՝ դրանում է բլոկի հանցավոր գործունեության ամբողջ իմաստը:

Իր ցուցմունքների ցինիզմով Կրեստինսկուց հետ չի մնում նաև Գրինկոն: Չէ՞ որ Գրինկոն ուղղակի ցուցմունք էր տալիս, որ նրանց օտարերկրյա—հետախուզական տերերի դրած խնդիրը կայանում է գլխավորապես նրանում, որ օգնություն ցույց տալ օտարերկրյա ագրեսորներին: Այդ յեղել է, — ասում էր այստեղ Գրինկոն,—և՛ տրոցկիստների, և՛ աջերի, և՛

բուրժուական նացիոնալիստական կազմակերպությունների և մասնավորապես ուկրաինական նացիոնալ-ֆաշիստական կազմակերպության ընդհանուր գիծը:

Այդ նշանակում էր Խորհրդային Միության պաշտպանողական հզորության քայքայում, քայքայիչ աշխատանք բանակում և պաշտպանողական արդյունաբերության մեջ, պատերազմի դեպքում ճակատի բացում և այդ պատերազմի պրովոկացիա: Ի՞նչ ասել կուզի, պատվավոր խնդիրներ են:

Այդ հանցավոր նպատակների հենց ցանկը գլխովին մատնում է այդ բլոկին, որպես մի քանի օտարերկրյա պետությունների լրտեսական—հետախուզական կազմակերպությունների վարձու բանդայի:

Իկրամովն այստեղ մեզ պատմեց այն մասին, թե ինչպես «աջ-տրոցկիստական բլոկի» պարագլուխները և առաջին հերթին Բուխարինը, նրան համոզում էին ձեռք առնել բոլոր միջոցները, որպեսզի դառնալ օտարերկրյա հետախուզությունների իսկական գործակալություն:

«Աջ-տրոցկիստական բլոկի» մոսկովյան պարագլուխները Իկրամովին ինֆորմացիա



էին տալիս ճապոն-գերմանական, ինչպես նրանք ասում էին, «կողմնորոշման» մասին, գերմանացիների և ճապոնացիների հետ կապ ունենալու մասին: Հանուն ինչի՞: Հանուն այն նույն խնդրի, որ այնպես ցայտուն կերպով պատկերեցին Գրինկոն և Կրեստինսկին:

Երկրորդ հանդիպումը նվիրված էր վնասարարության հարցի քննարկմանը: Երրորդ հանդիպումը նվիրված էր Անգլիայի հետ եղած կապին: Այդ մասին այստեղ շատ մանրամասն և լրիվ խոսեց մեղադրյալ Խոջաևը:

Ի՞նչ էր ասում նրան Բուխարինը: Նա ասում էր, թե պետք է կողմնորոշվել դեպի Անգլիան, որ եթե այժմ պատերազմ չլինի, եթե շուտով ինտերվենցիա չլինի, — մեր գործը կկործանվի:

Բուխարինը, ինչպես ասած, այստեղ չէր ժխտում այդ խոսակցությունը: Այդ նույնը հաստատեց և մյուս մեղադրյալը — Խոջաևը:

Թե ինչպիսին էին այդ փոխհարաբերությունները օտարերկրյա հետախուզությունների և բլոկի միջև, այդ մասին կարելի է

դատել մի շարք փաստերից, վոր անխախտելիորեն հաստատվել են ներկա դատական քննության ժամանակ:

Ցես ձեզ կհիշեցնեմ մեղադրյալ Ռիկովի հարցաքննությունը: Այն հարցին, թե ի՞նչ եր իրենից ներկայացնում բուրժուական - ֆաշիստական կազմակերպությունը, վորը գործում եր Բելոռուսիայում, Գոլոդեդի, Չերվյակովի և Շարանգովիչի ղեկավարությամբ, Ռիկովը պետք է խոստովաներ, վոր Բելոռուսիայում նույնիսկ ղեկավար պաշտոնների համար առանձին աշխատողների շատ թե քիչ խոշոր նշանակումը նախապես համաձայնեցվում եր լեհական հետախուզության հետ: Ցես ձեզ կհիշեցնեմ մեղադրյալ Իվանովի ցուցմունքները, — վորն այստեղ արդեն խոսեց այդ մասին, վոր բլոկի շատ մասնակիցներ չեյին զանազանում, թե վորտե՞ղ են գործում աջերը և վորտե՞ղ է գործում օտարերկրյա հետախուզությունը, այնքան նրանց մոտ միահյուսվել եր ամեն ինչ: Ցես ձեզ կհիշեցնեմ նաև այն, վոր Իվանովի ասելով, Բուխարինը նրան հանձնարարում եր կապվել անգլիական հետախուզության հետ:



Բուխարինն ասում եր, թե Անգլիան խիստ մեծ շահեր ունի Հյուսիսային յերկրամասում: Նա ասում եր, վոր այդ յերկրի հետ աջերի կենտրոնն ունի համաձայնություն Խորհրդային իշխանության տապալման մեջ աջերին ոգնելու մասին և վոր այդ համաձայնության մեջ նախատեսվում և ապահովել անգլիական անտառարդյունաբերողների շահերը Հյուսիսային յերկրամասի անտառային տնտեսությունում:

Իվանովը ցուցմունք ավեց, վոր Բուխարինը նրան հանձնարարում եր գործը դնել այնպես, վորպեսզի ցույց տալ անգլիական բուրժուազիային, թե աջերը հաճույքով կհամաձայնվեն այդ բուրժուազիայի տնտեսական և ֆինանսական ամեն տեսակ շահերի բավարարման, հանձնարարում եր ավանսներ տալ անգլիական բուրժուազիային, այն հաշվով, վորպեսզի մի կողմից չկորցնել իրենց ցույց տրվելիք աջակցությունը և մյուս կողմից չկորցնել վստահությունը:

Ըստ եյության, այդ մասին եր խոսում նաև Ռակովսկին, յերբ ցուցմունքներ եր տալիս, թե հաճախ ինչպիսի հակառական

դրություն էր առեղծված տարբերկրյա հետախուզությունների «բարեխիղճ» գործակալների համար, ինչպիսին յերևում է այդ զրուցակից ծերուկը, որ նստած է այստեղ ձեր առաջ, մեղադրական աթոռի վրա: Ինքը Ռակովսկին ներկայացնում է մի այնպիսի մասնագետ, որը միաժամանակ ծառայում էր թե՛ ճապոնական և թե՛ անգլիական հետախուզություններին և Յուրենևի հետ միասին իրենց համար «ծանր» դրության մեջ էր ընկնում:

«Մենք, — ասում է այստեղ Ռակովսկին, հաղորդելով Յուրենևի խոսքերը, — ընկանք այնպիսի խճողման մեջ, որ, յերբեմն չգիտես ինչպես պահել քեզ: Վախենում ես, որ չլինի թե բավարարելով մեր կոնտրագենտներից մեկին, վիրավորես մյուսին: Հենց այժմ, օրինակ, Անգլիայի և Ճապոնիայի միջև անտագոնիզմ է ծագում չինական հարցում, իսկ մենք ստիպված ենք կապ ունենալ թե՛ անգլիական և թե՛ ճապոնական հետախուզությունների հետ...»:
Ծա՛նր դրություն հետախույզի համար:



Ծա՛ր դրություն անգլիական և ճապոնական լրտեսի համար:

Այս կապակցությամբ պետք է ասել Բուխարինի մասին, որին ուզում էր այստեղ ցույց տալ, թե եյապես ասած՝ նա կողմնակից չէ ԽՍՀՄ-ի պարտության և դեմ էլ լրտեսության, և դեմ էլ վնասարարության, և դեմ էլ դիվերսիայի, քանի որ նա առհասարակ չպետք է առնչություն ունենար այդ պրակտիկ գործի հետ, որովհետև նա «թեորետիկ» է, որը զբաղվում էր ընդհանուր հարցերի պրոբլեմատիկայով:

Յերբ Բուխարինին այդ մասին հարց են տալիս.— «Այդ կերպ ասած՝ յեղե՞լ է կողմնորոշում մի քանի տարբերկրյա պետությունների օգնության նկատմամբ», նա պատասխանում էր. — «Այո, այդ կարելի յե նաև այդպես ասել»: Նա չի ուզում ուղղակի ասել, այլ ասում է, թե «Այդ կարելի յե և այդպես ասել»: Կարելի յե և պետք է այդպես ասել, որովհետև դա համապատասխանում է իրականության: Այն հարցին, թե՝ «Այդ կերպ ասած՝ կողմնորոշո՞ւմ դեպի ԽՍՀՄ-ի պարտությունը», Բուխարինն ասում է, հավատարիմ մնալով իր խոսքային մշուշոտ լաբիրինթին.—

«Ընդհանրապես, ամփոփած, կրկնում եմ, այո»:

Բուխարինը Ռիկովի և Տոմսկու հետ միասին կազմակերպում եյին վոչ թե կուսակցական գործ, այլ լուրջ գործ, Խորհրդային կառավարության և Խորհրդային իշխանության տապալման գործը, չխորշելով ամենևին վոչ մի միջոցից: ԽՍՀՄ-ի ներսում կորցնելով ամեն-մի հենարան, իրենց բոլոր հույսերն ուղղելով դեպի ԽՍՀՄ-ի թշնամի տարբերկրյա պետությունները, նրանք համաձայնության յեկան նրանց հետ, ճակատը բաց անելու, խորհրդային ժողովուրդը, խորհրդային պետությունը ջախջախելու համատեղ դիտավորության մասին, վորպեսզի դավաճանության ճանապարհով սողոսկեն դեպի իշխանությունը, վորն այդ նույն ժամանակին նրանք պետք է ամբողջովին, անվերապահորեն և լիովին հանձնեին ֆաշիստների ձեռքը, իրենց իսկական տերերի ձեռքը:

Բավական է խոսքերով խաղ խաղալ: Բավական է լարախաղը, «փիլիսոփայությունը»: Խոսքը վերաբերում է պետական դավաճանության, թշնամու կողմն անցնելուն, ճակատը բաց անելուն, ԽՍՀՄ-ի



պարտության, մեր հայրենիքի ջախջախման:

Այդ դավադրության առանձին մասնակիցների լրտեսական ամբողջ աշխատանքին բոլոր ճակատամասերում, ամբողջովին վերցրած, ուղղություն եյին տալիս Բուխարինը և Ռիկովը: Լրտեսական բոլոր տեղեկությունները կանոններով գնում եյին համապատասխան օրգանները, այն միջոցների և կապերի օգնությամբ, վոր կային Ռիկովի, Բուխարինի, Յագոդայի և նրանց գործակիցների ձեռքերում:

Այսպես, դատարանում լրիվ չափով հայտնաբերվեց Ռիկովի, Բուխարինի և Յագոդայի կապը մի շարք տարբերկրյա պետությունների հետախուզությունների հետ: Մենշևիկների, Դանի, II Ինտերնացիոնալի, էսէռների, Մասլովի, արտասահմանյան տարբերկրյա հետախուզությունների հետ միասին, ագրեսորների հետ միասին նրանք փորձում եյին տապալել խորհրդային իշխանությունը և վերականգնել իսկական, մոլի, հարյուր տոկոսային կապիտալիզմի, կալվածատերերի և ֆաբրիկանտների իսկական տիրապետության իշխանությունը:

Այդ բոլոր վնասարարությունները, դավաճանությունները, մատնությունները խառնվում էին օտարերկրյա հետախուզություններին գաղտնի տեղեկություններով և զանազան տեսակ նյութերով սիստեմատիկորեն ապահովելու հետ: Կրեստինսկին, Ռոզենհոլցը, Իվանովը, Շարանգովիչը, Զերնովը, Ռակովսկին, Յագոդան և ուրիշները Խորհրդային պետության գաղտնիքները սիստեմատիկորեն հաղորդում էին օտարերկրյա հետախուզություններին:

Մենք հավաստի տեղեկություններ ունենք օտարերկրյա հետախուզություններին «աջ-տրոցկիստական բլոկի» պարագլուխների սիստեմատիկորեն ապահովելու մասին: Յես այստեղ կբերեմ Տոկիոյի «Միակո» թերթի 1937 թվի փետրվարի 20-ի համարից մի հատված, որը պարունակում է ինֆորմացիա այսպես կոչված՝ պլանային բյուջետային հանձնաժողովի գաղտնի նիստի մասին: Պատգամավոր Իսախյան զինվորական մինիստր գեներալ Սուգիյամային դիմեց հետևյալ հարցով — «Արդյոք նրան և բանակին հայտնի՞ չէ Սիբիրի երկաթուղու փոխադրական ունակությունը»: Մինիստրն այդ հարցին պատասխանեց ը—



րականապես և ասաց, որ իրեն հայտնի չէ Սիբիրի երկաթուղու փոխադրական ունակությունը, որ նրանք Սիբիրի երկաթուղու փոխադրական ունակության մասին ունեն սիստեմատիկ տեղեկություններ Ռուսաստանում յեղած տարրերից, որոնք այժմյան Խորհրդային կառավարության հանդեպ ոպոզիցիայում են գտնվում: Նրանց միջոցով Ճապոնիայում տեղեկություններ են ստանում Սիբիրի երկաթուղու մասին:

Ահա նրանք, այդ տարրերը, ահա նրանք, այդ լրտեսները, հետախույզները, իմպերիալիզմի ծառաները, որոնք վաճառքի յեն հանում մեր երկրի շահերը: Ահա նրանք — զինվորական մինիստրի գործակալները, որոնք հավաքում են իրենց ուժերը մեր երկրի սահմաններում, մեր սրբազան սահմանների վրա հարձակվելու համար:

Բուխարինը, Տոմսկին, Ռիկովը, Յագոդան պատրաստվում էին բաց անել ճակատը: Սակայն այստեղ ևս, ինչպես և ամենուրեք, ինչպես և իրենց ամբողջ դավաճանական աշխատանքում, նրանք գործում էին որպես պրովոկատորներ: Յեվ այդ

նույնպես պատահական չէ, վերջինս այդ ընտրում է այդ պարոնների աշխատանքի մեթոդը: Նրանք պատրաստվում են բաց անել ճակատը, սակայն նրանք ուզում են մեր ամբողջ յերկրի բանվորների ու գյուղացիների առաջ, մեր ամբողջ ժողովրդի առաջ այնպես պատկերել գործը, թե ճակատը բաց են արել վոչ թե նրանք, այլ ինչ վոր մի ուրիշը, թե նրանք, ընդհակառակը, դեմ են ճակատը բաց անելուն, դեմ են դավաճանությանը. նրանք նույնիսկ պայմանավորվում եյին այն մասին, թե ինչպես իրենց սեփական հրամանով դատի տան նրանց, ովքեր բաց կանեն ճակատը, վորպեսզի հայրենասիրական լոզունգներով խաղ անեն, ինչպես ցինիկաբար արտահայտվեց Բուխարինը:

Խաղը մերկացված է: Պոկված են դավաճանական դիմակները նրանց դեմքերից և ոտկված են ընդմիշտ: Մեղադրյալներից վոչ մեկը չհամարձակվեց ժխտել իր հանցավոր աշխատանքը ԽՍՀՄ-ի պարտության նախապատրաստելու և ԽՍՀՄ-ն մասնատելու ուղղությամբ:

Տրոցկին, ինչպես այդ հաստատվել էր նախընթաց դատավարություններում և



ինչպես այդ նորից հաստատված է ներկա դատավարությունում, գերմանական և ճապոնական հետախուզությունների հետ համաձայնություն էր դրել ԽՍՀՄ-ի և Խորհրդային իշխանության դեմ միասին պայքարելու մասին: Մենք այս դատավարությունում ևս այդ առթիվ ունենք մեղադրյալներից մեկի, հենց մեղադրյալ Բեսսոնովի շատ մանրամասն ցուցմունքները:

Մենք գիտենք, վոր տրոցկիստները կարողացել եյին յերկերեսանիության իրենց դիմակի տակ՝ խցկվել մի ամբողջ շարք բավականաչափ պատասխանատու պաշտոնում, վորտեղ գործնականորեն իրականացվում է մեր արտաքին քաղաքականությունը: Ռակովսկիները, կրեստինսկիները, յուրենևները և ուրիշները, բեսսոնովները և դրանց նմանները — այդ բոլոր այն մարդիկն են, վորոնք կատարում եյին արտաքին հարաբերություններում ԽՍՀՄ-ի դիվանագիտական ներկայացուցչության իրենց հանձնարարված գործը: Դրանով է միջի այլոց ե՛լ ավելի յե՛ սաստկանում նրանց հանցանքը և Խորհրդային պետության ու խորհրդային ժողովրդի առաջ նրանց պատասխանատվության ծանրությունը:

Այդ պարոններն օգտագործում էյին իրենց պաշտոնական դիրքը, — և այդպես էր անում և՛ Ռակովսկին, և՛ Գրինկոն, և՛ Կրեստինսկին, — նրա համար, վորպեսզի վիժեցնեն խաղաղության գործը, նրա համար, վորպեսզի ձեռք առնեն հնարավոր ընդհարումների պրովոկացիայի միջոցները հօգուտ իմպերիալիստների:

Համաձայնության յերկրորդ կետը ԽՍՀՄ-ում տրոցկիստական կազմակերպությունների բազմակողմանի համագործակցությունն է գերմանական ընդհատակյա աշխատողների և լրտեսական կազմակերպությունների ու դրանց գործակալների հետ: Ինչի՞ համար: ԽՍՀՄ-ի ռազմական և տնտեսական հզորությունը քայքայելու համար, պատերազմում ԽՍՀՄ-ի պարտությունն ապահովելու համար:

Յերրորդ կետը — գերմանական ֆաշիզմի աջակցությունն է ԽՍՀՄ-ում պետական հեղաշրջման, իշխանությունն «աջ-տրոցկիստական բլոկի» ձեռքն անցնելու նպատակներով:

Չորրորդը — ինտերվենցիայի արագացումն է և, նոր կառավարության հետ, նրա իշխանության անցնելուց հետո, անհա-



պաղ հաշտության կնքելը, — բնական քայլ այն դավաճանական աշխատանքի պլանում, վոր կատարում էյին այդ պարոնները:

Հինգերորդը — Ուկրաինայի անջատումը ԽՍՀՄ-ից հօգուտ Գերմանիայի, ինչպես և Պրիմորյեյի անջատումը հօգուտ Ճապոնիայի, ինչպես և Բելոռուսիայի անջատումը հօգուտ Լեհաստանի, ինչպես և ամբողջ Խորհրդային Միության մասնատումն առանձին մասերի և հանրապետությունների անջատման միջոցով և նրանց հանձնելն արտերկրյա իմպերիալիստների տնօրինությանը:

Բուխարինն այստեղ պնդում է խոստովանելով, վոր այն պայմանները, վորոնցով կնքվել էր այդ, այսպես կոչված՝ դաշինքը, — իսկ այդ ամենևին «դաշինք» չէ (իսկ այդ, եյապես ասած՝ տիրոջ և գործակատարի պայմանագիր է), — այդ պայմաններն էյին՝ ԽՍՀՄ-ի մասնատումը, Ուկրաինայի, Պրիմորյեյի, Բելոռուսիայի անջատումը ԽՍՀՄ-ից: Յես Բուխարինին հարցրի՝ «Ո՞ւմ օգտին»: Յեվ նա պատասխանեց. «Գերմանիայի օգտին, Ճապոնիայի, մասամբ Անգլիայի օգտին»: Դա Բուխարինի սեփական խոստովանությունն է, վորից

նա չի կարող ճողոպրել և որից նա չի ճողոպրի:

Տրոցկիստները և աջերը գործում էին հենց այդ համաձայնության համապատասխան:

Հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկում» աչքի ընկնող տեղ էին գրավում բուրժուական-նացիոնալիստական խմբեր, որոնք կազմվել էին մի քանի ազգային հանրապետություններում նույն ստորերկրյա հետախուզությունների գործակալության ուղղակի ազդեցությամբ և այսպես կոչված՝ «աջ-տրոցկիստական բլոկի» կենտրոնի անմիջական ղեկավարությամբ:

Դավաճաններ Գրինկոն, Խոջաևը, Շարանգովիչը, Իկրամովը, — որոնք զանազան ռանգի մարդիկ, մոլի հակահեղափոխականներ են, հակահեղափոխական մեծ ստաժով, «բորոտբիստներից», «միլլի իստիկլյալից» և «միլլի իտտիհադից» մինչև «աջ-տրոցկիստական բլոկը»:

Ռիկովը հավատացնում էր Խոջաևին, որ աջերի ղեկավարությամբ ուզբեկական նացիոնալիստական կազմակերպությունը կարող է ձեռք բերել Ուզբեկական հանրապետության «անկախություն»:



Ռիկովի հետ միասին այդ խսկ ուղղությամբ գործում էր Բուխարինը, որը, Խոջաևի ասելով, գովաբանում էր գերմանական ֆաշիզմը, ասելով, որ ֆաշիստական Գերմանիան այժմ բոլոր ուժերով աշխատում է, որպեսզի Գերմանիան դառնա Եվրոպայի հեգեմոն և որ հնարավոր է համաձայնություն Ճապոնիայի և Գերմանիայի միջև, ԽՍՀՄ-ի դեմ պայքարելու համար:

Բուխարինը Խոջաևին համոզում էր դեպի անգլիական հետախուզության ուղիներ և ճանապարհներ գտնել այն կուրբաշիների միջոցով, որոնց մասին այստեղ ցուցմունքներ տվեց Խոջաևը: Բուխարինն առաջարկում էր կապվել անգլիական շրջանների հետ, որևէ բան խոստանալ Անգլիային: Նա ասում էր. «Ուզբեկստանը չի կարող 5 միլիոն բնակչությամբ անկախ պետություն դառնալ յերկու հսկաների միջև, — մի կողմից Խորհրդային Միության, մյուս կողմից Անգլիայի: Հարկավոր է հասնել մի որևէ յեզերք»: Յեվ Բուխարինը մղում է Խոջաևին, — որը առանց այն բավականաչափ ինքնին նախապատրաստված էր, — հասնել բուրժուական հակահեղափոխական յե-

գերքը։ Այդ ուղղությամբ Բուխարինը մըշակում էր նաև Իկրամովին, թեև Իկրամովն այնպիսին է, որ նրա բերանն ես չես կարող մատդ դնել։ Բուխարինը ասում էր Լենինի մասին, նա ասում էր, թե գաղութային երկրները ՍՍՀՄ-ի պրոլետարիատի աջակցությամբ չեն կարող հասնել սոցիալիզմին։

Աջ-տրոցկիստական և բուրժուա-նացիոնալիստական դավաճանները, հօգուտ իրենց կապիտալիստական տերերի, ուզում էին Սոցիալիստական Մեծ Հեղափոխությամբ ազատագրված, առաջ ցարիզմի, կալվածատերերի ու կապիտալիստների կողմից ճնշված մեր ժողովրդական միլիոնական հանրապետությունները վերադարձնել կապիտալիստական լծի տակ։ Չհամարձակվելով բացահայտորեն խոսել այն ժողովուրդների ստրկացման, իրենց դավաճանական պլանների մասին, որոնք լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևանքով հասել են հսկայական բարձրության, կուլտուրական-քաղաքական ու տնտեսական բարգավաճման բարձրության, — այդ դավաճանները գործադրում էին իրենց դավաճանական, կեղծ, խաբեբայական



լոզունգները և ճառերն այդ հանրապետությունների անկախության մասին։

Իսկ թե աշխարհում, բացի ՍՍՀՄ-ից, կա մի ուրիշ երկիր, որտեղ իսկապես ապահովված լիներ իսկական ազգային անկախությունը, իսկական և լիակատար ազգային կուլտուրան, ժողովուրդների միլիոնավոր մասսաների իսկական ծաղկումը։ Այդպիսի երկիր, բացի ՍՍՀՄ-ից, չկա ամբողջ աշխարհում։ Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրների գաղութներում — Հնդկաստանում, Ալժիրում, Թունիսում, Մարոկկոյում, ինչպես և արևելյան երկրներում, ժողովուրդները հյուծվում են կապիտալիստական ճնշման ծանր լծի տակ, որտեղ ավելի և ավելի յե ուժեղանում աղքատությունը և թշվառությունը, մասսաների մահացումը սովից, որտեղ ծավալվում է սիֆիլիսը, տուբերկուլյոզը, որտեղ ավելի և ավելի յեն ծաղկում քայքայումը և պաուպերիզացիան, — ՍՍՀՄ-ում, նրա պանծալի 11 միութենական հանրապետություններում ավելի և ավելի յե աճում մասսաների նյութական բարեկեցությունը, ավելի և ավելի յե բարձրանում ձևով ազգային՝ բովանդակությամբ

սոցիալիստական կուլտուրան, մեծ, որհնրված ճառագայթներով ավելի բերկրալի ու պայծառ և շողշողում այդ հանրապետությունների հարուստ, անծայրածիր տարածություններում ծառացած նոր, սոցիալիստական արեգակը, ժողովուրդների եղբայրական անսասան միության — Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության անթառամ փառքի արեգակը:



# ՎՆԱՍԱՐԱՐՆԵՐԸ, ԴԻՎԵՐՍԱՆՏՆԵՐԸ

Դավաճանների այս շայկան գործում էր արդեն հայտնի, դատարանի կողմից բազմիցս հայտնաբերված հանցավոր մեթոդներով — վնասարարություն, դիվերսիայի, լրտեսություն, տեռորի մեթոդով: Վնասարարները, դիվերսանտները, լրտեսները սողոսկել էին մի շարք ճյուղեր և այնտեղ գրավել ղեկավար դիրք: Այդպես էր Ջերնովը, որը գրավում էր Միության Հողագործության ժողովրդական կոմիսարի բարձր պոստը, այդպես էր Գրինկոն, որը գրավում էր ԽՍՀՄ Ֆինանսների ժողովրդական կոմիսարի բարձր պոստը, այդպես էր Ռոզենհոլցը, որը գրավում էր ԽՍՀ Միության Արտաքին Առևտրի ժողովրդական կոմիսարի բարձր պոստը, այդպես էր Զելենսկին — Ցենտրոսոյուզի նախկին նա-

խաղահը, այդպես է յեղել դարձյալ մի շարք այլ դեպքերում: Այդ հանցագործների ձեռքում կային, իհարկե, ամենալայն և միևնույն ժամանակ ամենադիմակավորված ու ամենավտանգավոր վնասարարության այնպիսի հնարավորություններ, որոնց նմանը սակավ է լինում հանցագործների ձեռքում:

Հետապնդելով իրենց հիմնական նպատակը՝ Խորհրդային իշխանության տապալումը, — «աջ-տրոցկիստական բլոկը» — ինչպես այդ ցույց տվեց մեր դատաքննությունը — կանգ չէր առնում ամենակեղտոտ ու ամենացինիկ միջոցների առաջ, թուլացնելու համար մասսաների վստահությունը դեպի Խորհրդային իշխանության օրգանները, բնակչության մեջ դժգոհություն սերմանելու դեպի Խորհուրդները, և ըստ հնարավորության ժողովրդին հանել Խորհրդային իշխանության դեմ:

Այդ դավադրական գործունեությունը, որը մեղադրյալներից յուրաքանչյուրի կողմից կիրառվելիս է յեղել այնտեղ, որտեղ նա աշխատում էր, իրենից ներկայացնում է խոշորագույն ընդհանուր-քաղաքական վտանգ: Այդ մասին հատկապես վի-



կայում են այնպիսի գործեր, ինչպես, օրինակ, այստեղ, դատարանում հիշատակված լեպելյան գործը — այն անկարգությունները ու անօրինականությունները, որ այդ բլոկի ցուցումներով իրականացվում էին դավադիրների ու վնասարարների կողմից, ուղղված էին այն բանին, որպեսզի անօրինական գործողությունների պրակտիկայով բնակչության ամենալայն մասսաների աչքում վարկաբեկեն Խորհրդային իշխանությունը:

Վերցրեք ֆինանսները: Վնասարարների հիմնական դրույթը ֆինանսների բնագավառում, ինչպես այդ ձևակերպել էր Ռիկովը՝ Բուխարինի հետ համաձայնեցնելով, — յեղել է՝ «խորհրդային ռուբլով խփել խորհրդային կառավարությանը»: Դա տրոցկիստական այն հին լոզունգի վերաֆրազավորումն է, որը մյուս դատավարություններից հայտնի յե Պյատակովի ասածով — «առավել զգայուն միջոցներով խփել առավել զգայուն տեղերին»:

«Խորհրդային ռուբլով խփել խորհրդային կառավարությանը» — ահա այն դիրեկտիվը, որը բնորոշում էր Գրինկոյի ամբողջ գործունեությունը, որը լինելով

Ֆինանսների նախկին ժողովրդական կոմիսար, միևնույն ժամանակ գործում էր վորպես գերմանական ու լեհական հետախուզությունների գործակալ և Բուխարինի ու Ռիկովի ձեռնասուն: Հենց «բլոկի» այդ դիրեկտիվը, այդ վորոշումը նա ձգտում էր կենսագործել վոչ թե ահից դրդված, այլ խղճի մտոք (թեև պղծված խիղճ):

Հանձին Գրինկոյի մենք տեսնում ենք Խորհրդային իշխանության հին, մոլի թշնամու, վորն ամբողջությամբ ու լրիվին վաճառվել էր գերմանական հետախուզությանը, վնասարարության, դիվերսիայի, դավաճանության ու տեռորի միջոցով ակտիվ կերպով պայքարում էր խորհրդային իշխանության դեմ, հանուն կապիտալիզմի վերականգնման:

Վերցրեք մի այլ հետախույզի, Զերնովին — անկասկած «տաղանդավոր» մի մարդու, վորովհետև նա կարողացել էր միայն մեկ յերեկոյի ընթացքում Կիբրիկի հետ միասին լինել Դանի մոտ, կռվել վատիկանի հետ, ընկնել պոլիցեյ-պրեզիդիում և դառնալ գերմանական հետախույզ:

Սակայն անհավանական այստեղ վոչինչ չկա: Կյանքում հենց ճիշտ այդպես էլ լի-



նում է այնպիսի մարդկանց հետ, ինչպիսին է Զերնովը: Այդ այժմ է նրա տեսքը քիչ թե շատ թարմ ու առողջ: Բանտարկությունը նրան զգալի չափով օգնեց: Այդ ժամանակ նա այլ դեմք ուներ, ալկոհոլիկի հարբած դեմք, վորն ավելի շատ խմում էր, քան թե աշխատում. դա մի մարդ էր՝ հիվանդ սոցիալական ախտով — ալկոհոլիզմով: Յեվ ահա, կառավարության հանձնարարությամբ նա գնում է արտասահման: Բայց միաժամանակ հանձնարարություն էր վերցնում «բլոկից», վորը նրա պատահական գործուղումն օգտագործում է, վորպեսզի նրան ուղարկի Դանի հետ կապ կազմակերպելու: Ընկնում է նա Դանի և Կիբրիկի մոտ: Դանը և Կիբրիկը, դրանք, պարզ է — գերմանական հետախույզներ են: Դա յերևում է թեկուզ նրանից, վոր այն խոսակցությունը, վոր նա ունեցել էր Դանի և Կիբրիկի հետ, անմիջապես հայտնի յե դառնում պոլիցեյ-պրեզիդիումի հետախուզությանը: Նա կառավարության հանձնարարությամբ գնում է և բանից դուրս է գալիս, վոր կապվում է այնպիսի մոլի մենշևիկների հետ, ինչպիսին են Դանը և Կիբրիկը, նրանց հետ օյիններ է սարքում:

Այդ Ջերնովի համար կարող է արժենալ ո՛չ միայն քաղաքական կարյերա: Եվ գերմանական հետախուզությունն օգտվում է դրանից:

Ջերնովի մասին Ռիկովը նույնիսկ արտախոսեց, թե Ջերնովը մեկ յերեկոյի ընթացքում կարողացել էր լինել պոլիցեյ-պրեզիդիումում և դառնալ հետախույզ:

Եվ ահա, Ջերնովը գործում է գերմանական հետախուզության առաջադրանքով և ուղղակի ասում. «Վորպես հատուկ պայման՝ գերմանական հետախուզությունը դնում էր վնասարարության կազմակերպումը ձիաբուծության բնագավառում»: Այն նպատակով, վորպեսզի — ինչպես ասում էր Ռայվլդը — ձիեր չտրվեն Կարմիր Բանակի համար:

Ինչարկե, ուրիշ ո՞վ կարող էր այդ անել, յեթե վոչ այն անձնավորությունը, վորն այդպիսի բարձր պոստ էր գրավում — յեթե վոչ Ջերնովը:

Ուրիշ ո՞վ կարող էր հատուկ Փաբրիկաներ կազմակերպել վարակիչ պրեպարատներ պատրաստելու համար: Եվ նա այդ իրականացնում է: Նա այստեղ ինքն ասաց, վոր 25 հազար ձի սատկել է իր ա-



ռաջադրանքով: Այնպիսի յերկրամասերում, ինչպես Սիբիրը, վոչնչացվել են մեծ քանակությամբ ձիեր: Վնասարարները հատկապես սուժա և ժանտախտ էին տարածում խոզերի մեջ: Այդ բանն անում էին և՛ Վորոնեժի մարզում, և՛ Ազով-Սևծովյան յերկրամասում, և՛ Լենինգրադի մարզում:

Ռոզենհոլցն էլ գործում է այնպես, ինչպես այդ ձեռնտու յեր գերմանացիներին ու ճապոնացիներին: Նա հատկապես այդ ոտարերկրյա պետությունների շահերից յելնելով, կնքում է նավթային պայմանագիր: Նա հատկապես վնասարար ձևով է կազմակերպում վոսկու մշակության մնացուկների արտահանությունը, նույն այդ պետությունների շահերի օգտին, ուղղակի կերպով խախտելով իր հայրենիքի շահերը: Նա չուգունի վնասարարական ու հանցավոր եքսպորտ է կազմակերպում դեպի Ճապոնիա, վորպեսզի այդ չուգունից պատրաստվեն հենց այն արկերը, վորոնցով ճապոնական զինվորականությունը պատրաստվում է, յեթե չռմբակոծել, ապա համենայն դեպս վախեցնել մեր հայրենիքը: Նա ամեն կերպ ձգձգում է պաշտպանական իմպորտը: Նա գործում է այնպես, ինչպես նրան հրա-

մայել էր հետախուզությունը, օգտագոր-ծելով իր բարձր դիրքը, խաբելով, մատնի-չորեն — ու խարդախորեն դավաճանելով իր պետական պարտքին:

Իկրամովը՝ Խոջաևի հետ միասին, վը-նասարարության ասպարեզում հետ չեն մնում իրենց կենտրոնական «կոլեգանե-րից»: Նա ինքն այստեղ ցուցմունք տվեց նախաքննության կատարված վնասարարու-թյան մասին, մետաքսի ֆաբրիկներում, բամբակազտիչ գործարաններում կատար-ված վնասարարության մասին, բամբակա-յին տնտեսության կազմակերպման մեջ կա-պած վնասարարության մասին: Նրանց ցուցմունքներով, այդ վնասարարական քայ-քայիչ աշխատանքի կազմակերպման մեջ Ռիկովի և Բուխարինի դերը յեղել է միան-գամայն վորոշակի, դեր՝ վորը կարելի յե անվանել ղեկավարող:

Զելենսկի: Այստեղ յես միայն կմատ-նանշեմ պարենային մթերքների մեջ, մա-նավորապես յուղի մեջ ապակի ու մեխ լըց-նելու ամենախայտառակ պրակտիկայի մա-սին, վորը հարվածում եր մեր բնակչու-թյան ամենասուր կենսական շահերին, նրա առողջության ու կյանքի շահերին: Ապակի



և մեխ — յուղի մեջ: Չէ՞ վոր սա այնպի-սի մի հրեշավոր հանցագործություն է, վորի հանդեպ, ինձ թվում է, նսեմանում են նման ոտքի մյուս բոլոր հանցագործու-թյունները: Մեր յերկրում, վորը հարուստ է ամեն տեսակ ռեսուրսներով, չեր կարող և չի կարող լինել այնպիսի դրություն, յերբ մի վորևե մթերքի պակաս զգացվի: Հենց այդ պատճառով էլ այդ ամբողջ վնա-սարարական կազմակերպության խնդիրն է յեղել — հասնել այնպիսի դրության, վոր-պեսզի այն, ինչ մենք ունենք առատ չա-փով, դարձնեն դեֆիցիտային, շուկան և բնակչության պահանջները պահեն լարված վիճակում: Այստեղ կհիշեցնեմ միայն մի եպիզոդ Զելենսկու գործունեությունից — այն 50 վագոն ձվի պատմությունը, վոր Զելենսկին դիտավորյալ կերպով փչացրել եր, վորպեսզի Մոսկվան թողնի առանց սննդի, այդ ամենաանհրաժեշտ մթերքի:

Վնասարարություն կազմակերպելով, այդ բոլոր ռիկովներն ու բուխարինները, յագոդաներն ու գրինկոները, ռոզենհոլցնե-րն ու չերնովները և այլն, և այլն, այդ բնագավառում հետապնդում եյին վորոշակի մի նպատակ — փորձել սովի վոսկրոտ ձեռ-

քով խեղդել Սոցիալիստական Հեղափոխությունը: Չհաջողվեց այդ և յերբե՛ք չի հաջողվի:

Տարանդավիչը տարածում է ձիերի անեմիա — սատկում են 30 հազար ձի: Տարանդավիչը քայքայում է տորֆի արդյունաբերությունը: Տարանդավիչը գիտակցաբար սերմանում է ազգային յերկպառակություն, նացիոնալիստական զգացմունքներ զարգացնելով բելոռուս բնակչության մեջ:

Իվանովն ավերում է գործարանները, ավերում է ցելյուլոզի — թղթի արդյունաբերությունը, թեև զգուշորեն, ուշադիր, վոր չլինի թե չափազանց շատ վնասի անգլիական տերերի շահերին, վորոնց «աջ-տրոցկիստական բլոկն» ուզում եր հանձնել անտառային տնտեսությունը և վորոնց ոգտին աշխատում եր իր ուժն ու հնարավորությունները ներածին չափ:

Յեվ դրան ավելանում է խորհրդային իշխանության դեմ ուղղակի ու բացահայտ զինված ելույթների կազմակերպումը: Բուխարինը, Ռիկովի հետ միասին, ուղարկում է Սլեպկովին Հյուսիսային Կովկաս, Յակովլեվին՝ Սիբիր, վորոնք էլ հենց այնտեղ առաջ են բերում ապստամբական



շարժում, կապվում են արտասահմանում յեղած կազակային—սպիտակ գվարդիական շրջանների հետ, կազակային դեսանտ են պատրաստում Հյուսիսային Կովկասում: Ռիկովը՝ Զուբարյովի հետ միասին Ուրալում կազմակերպում է ապստամբական ջոկատներ: Իկրամովը՝ Խոջայեվի հետ միասին նույն այդ Բուխարինի, Ռիկովի և այլոց ղեկավարությամբ ապստամբական ջոկատներ է կազմակերպում Միջին Ասիայում՝ մոլլաներից, բայերից, ամեն տեսակ ապադասակարգայնացված տարրերից: Նույնիսկ Իվանովը Հյուսիսային յերկրամասում, Բուխարինի ուղղակի հանձնարարությամբ նույնպես աշխատում է ապստամբական ջոկատներ կազմակերպել աքսորված կուլակներից: Ըստ յերևույթին այդ ճանապարհով էլ հենց Բուխարինն ուզում եր կուլակների համար հնարավորություն ապահովել «ներաճելու սոցիալիզմի մեջ»:

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐ Ս. Մ. ԿԻՐՈՎԻ, Վ. Ռ. ՄԵՆԺԻՆՍԿՈՒ, Վ. Վ. ԿՈՒՅԲԻՇԵՎԻ, Ա. Մ. ԳՈՐԿՈՒ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Յես այժմ անցնում եմ հաջորդ բաժնին, այն է՝ մեղադրյալների տեռորիստական գործունեությանը և խորհրդային պետության գործիչների դեմ նրանց կողմից ծրագրված ու իրականացված սպանություններին, Ս. Մ. Կիրովի, Վ. Ռ. Մենժինսկու, Վ. Վ. Կույբիշևի, Ա. Մ. Գորկու սպանություններին և Մ. Ա. Պեշկովի սպանությանը:

Այդ՝ դատավարության ամենամռայլ ու ամենածանր մասերից մեկն է:

Ինչպե՞ս էր Ռիկովը պատճառաբանում իր ընդհատակյա խմբի անցնելը տեռորի: Շատ անկեղծորեն: Նա ասաց. «Աջերի հակահե-



ղափոխական կազմակերպության անլեգալ, դավադրական բնույթի պայմաններում, նրա հակահեղափոխական աշխատանքի համար վորևէ մասսայական բազայի բացակայության պայմաններում, վորևէ այլ ճանապարհով իշխանության գլուխ անցնելու հույսի բացակայության պայմաններում, տեռորն ընդունելը, կենտրոնի կարծիքով, տալիս էր վորոշ հեռանկար»:

Մեռելային սառնություն ու դաժանություն է փչում Ռիկովի և աջ-տրոցկիստական ֆաշիստական մյուս դավադիրների այդ ցուցմունքներից:

Բուխարինը նույնպես կողմնակից էր տեռորին, թեև,—ինչպես նա հայտարարեց,— ինքը կողմնորոշվելիս է չեղել ավելի շատ վոչ թե դեպի տեռորը, այլ դեպի մասսայական ապստամբությունները: Թե նա ինչպես է կողմնորոշվելիս չեղել—այդ նրա գործն է բացատրել. բայց մենք գիտենք, վոր նա շատ վաղուց՝ այժմ այդ պետք է համարել լիովին ապացուցված՝ դեռ 1918 թվին մասնակցել է և՛ Կապլանի, և՛ «ձախ» էսէռների, և՛ տրոցկիստների, և՛ աջ էսէռների կողմից տեռորիստական ակտերի կազմակերպմանը: Նա ինքը լիաձայն ասում է,

որ այնուհետև՝ 1932 թվին, ինքը բանակցություններ է վարում նախկին եսեր Սեմյոնովի—տեռորիստական ակտերի կազմակերպչի և եսերական դրուժինաների մարտական ղեկավարի հետ, բանակցություններ է վարում ընկեր Ստալինի և ընկեր Կագանովիչի դեմ տեռորիստական պայքար կազմակերպելու մասին: 1932 թվին Բուխարինը, Պյատակովի և Սեդովի միջոցով, բանակցություններ է վարում Տրոցկու այն պայմանի, դիրեկտիվի—կամ ինչպես նա անվանում է՝ դրույթի մասին, որը մատնանշում էր տեռորին անցնելու անհրաժեշտությունը: Դավադրական բլոկը լայնորեն ծավալում է տեռորիստական խմբերի կազմակերպումը, որոնք գործնականորեն պատրաստում են տեռորիստական ակտերի, Կիրովի սպանության իրականացումը: Այդ սպանությունը լիովին յերևան բերվեց ու մերկացվեց նախորդ դատավարության ժամանակ, բայց միայն այժմ հաստատվեց, որ տրոցկիստական-զինովյևյան կենտրոնի գործունեությունը, կենտրոնի՝ որն սպանեց Սերգեյ Միրոնովիչ Կիրովին, չէր կրում ինքնուրույն բնույթ: Այժմ հաստատված է, որ Կիրովը սպանվել է առաջ հենց



այս «աջ-տրոցկիստական» կենտրոնի, առաջ այս բլոկի որոշմամբ, բլոկ՝ որը կարելի յե անվանել բոլոր կենտրոնների կենտրոնը:

Մեղադրյալ Յագոդան դատարանում ընդունեց, որ Կիրովի սպանությունը կատարվել է «աջ-տրոցկիստական բլոկի» ուղղակի որոշմամբ, որ այդ որոշումն իրականացվել է Յագոդայի կողմից, որի վրա յել հենց դրված է յեղել այդ սուր պատասխանությունը:

Յագոդան դատարանում հաստատեց, որ Ռիկովը և Բուխարինը մասնակցել են այդ որոշումն ընդունելուն, որ Ռիկովը և Ենուկիձեն մասնակցել են կենտրոնի այն նիստին, որտեղ քննարկվել է Ս. Մ. Կիրովի սպանության հարցը, որ Ռիկովը և Ենուկիձեն, այդպիսով, անմիջական մասնակցություն են ունեցել Սերգեյ Միրոնովիչ Կիրովի սպանության բուն հարցի քննարկմանը: Իմ ուղղակի հարցին, թե այստեղ ճի՞շտ են ասում արդյոք Բուխարինը և Ռիկովը, հայտարարելով, թե այդ սպանության մասին իրենք չեն իմացել, Յագոդան հայտարարեց, որ այդպիսի բան լինել չի կարող, որովհետև յերբ Ենուկիձեն հաղորդել է որ «աջ-տրոցկիստական» բլոկը»

համատեղ նիստում վորոշել ե Կիրովի նկատմամբ տեռորիստական ակտ կատարելու հարցը, ինքը Յագոդան հրաժարվել ե այդ բանից, վորոշ «տակտիկական» կոնսպիրատիվ նկատառումներով, բայց այնուամենայնիվ տեղյակ ե յեղել, վոր այդ իրենց կենտրոնի վորոշումն ե և վոչ թե դավադիրների ինչ վոր մի պարտիզանական խմբի յելույթ, վոր այդ վորոշումը յելնում ե «աջ-տրոցկիստական բլոկից», վորին ակտիվ մասնակցություն ունեյին և՛ Բուխարինը, և՛ Ռիկովը:

Այժմ սույն կերպով հաստատված ե, վոր ընկեր Կիրովի սպանությունը կատարվել ե Յագոդայի ամենամոտիկ մասնակցությամբ: Յես ապացուցված եմ համարում նաև այն, վոր սպանությունը կատարվել ե Ռիկովի և Բուխարինի ամենամոտիկ մասնակցությամբ:

Բայց Կիրովի սպանությամբ,—ինչպես այդ հաստատվեց դատական քննության ընթացքում, չի սահմանափակվում աջ-տրոցկիստական դավաճանների ու դավադիրների տեռորիստական գործունեությունը:

Ինչպես հաստատված ե հետաքննու-



թյամբ, Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին, Վյաչեսլավ Ռուդոլֆովիչ Մենժինսկին և Վալերյան Վլադիմիրովիչ Կույբիշևն ընկան վորպես նույն այդ «աջ-տրոցկիստական բլոկի» առաջադրանքով իրականացված տեռորիստական ակտերի զոհեր: Սպանության զոհ գնաց նաև Ա. Մ. Գորկու վորդին—Մ. Պեշկովը:

Յագոդան այդ հարցի վերաբերյալ տվեց այսպիսի ցուցմունք.—

«Յես կտրականապես հայտարարում եմ, վոր Կիրովի սպանությունը կատարվել ե «աջ-տրոցկիստական բլոկի» կենտրոնի վորոշմամբ: Նույն այդ կենտրոնի վորոշմամբ են կատարվել տեռորիստական ակտերը և մեռցվել Կույբիշևը, Մենժինսկին և Գորկին»:

Այդ նույն բանը հաստատեցին նաև այն անձինք, վորոնք անմիջականորեն մասնակցություն են ունեցել այդ սպանությանը: Մարդասպանների շեֆի,—Յագոդայի ստոր դիտավորությունն իրականացվել ե ամենաուխտադրուժ, ստոր ու ճիվաղային յեղանակով: Յագոդան սկզբում փորձում եր ժխտել իր մասնակցությունը Մաքսիմ Ալեքսեյեվիչ Պեշկովի սպանությանը կազմա-

կերպերուն: Հետո նա այդ բանը խոստովանեց դատական դռնփակ նիստում: Նա—ինչպես այդ գրի յե առնված դատական քննության արձանագրությունների մեջ—լրիվին հաստատեց նախնական քննության ժամանակ տված իր ցուցմունքները, հաստատեց, վոր ինքն ե կազմակերպել Մաքսիմ Պեշկովի սպանությունը, այդ մասին իր խոսել չցանկանալը բացատրելով նրանով, թե սպանության մանրամասները կրում են խիստ անձնական բնույթ:

Նա ասում ե, վոր այդ հարցի վերաբերյալ յեղել ե կենտրոնի հատուկ վորոշումը, վորը նրան հանձնել եր Յենուկիձեն: Այդտեղ նախատեսված ե յեղել բժիշկների ոգտագործումը, վորը մեծ յերաշխիք եր ստեղծում մերկացման անհնարինության իմաստով:

Ինչպես մենք տեսնում ենք, Յագոդան հասարակ մարդասպան չե: Այդ մարդասպան ե՝ չմերկացվելու յերաշխիքով: Նրա յենթադրությունը, սակայն, այստեղ ևս չի արդարանում: Յերաշխիքը դուրս յեկավ նեխած, այն տապալվեց: Յագոդան և նրա ստոր հանցավոր գործունեությունը մերկացված են, մերկացված են վոչ թե այն դավաճա-



նական հետախուզության կողմից, վորը կազմակերպել և վարել Խորհրդային պետության և մեր հեղափոխության շահերի դեմ եր ուղղում դավաճան Յագոդան, այլ մերկացված են այն իսկական, իսկապես բոլշևիկյան հետախուզության կողմից, վորին ղեկավարում ե ստալինյան ամենանշանավոր զինակիցներից մեկը—Նիկոլայ Իվանովիչ Յեժովը:

Յենուկիձեն և Յագոդան զրուցում են այն թեմայի մասին, թե այն յերաշխիքների տեսակետից, վոր վորոնում եր Յագոդան, ինչպես ավելի լավ կլինի՝ մյուս աշխարհն ուղարկել Մենժինսկուն և իր ընտրած մյուս զոհերին:

Յագոդան առաջ ե քաշում իր խարդախ միտքը՝ հասնել մահվան—ինչպես ինքն ե ասում—հիվանդության հետևանքով, կամ ինչպես նա այստեղ դատարանում ասաց՝ «Յես ինձ հանցավոր եմ ճանաչում Մաքսիմ Պեշկովին հիվանդացնելու մեջ»:

Յագոդան կանգնած եր մարդկանց ամենանենգ յեղանակներով մեռցնելու տեխնիկայի բարձունքի վրա: Նա իրենից ներկայացնում եր բանդիտական «գիտության» վերջին խոսքը, գերազանցելով մի ամբողջ

շարք մյուս վոճրագործներին, վորոնք չէին հասկանում Յագոդայի այդ հեռու և խորը գնացող վոճրագործ դիտավորությունները:

«Երբ Ենուկիձեն հաղորդեց կոնտակտ կենտրոնի վորոշումը Կիրովի սպանության մասին, յես վախ արտահայտեցի, — ասում էր Յագոդան, — վոր ուղղակի տեռորիստական ակտը կարող է տապալել վոչ միայն ինձ, այլև ամբողջ կազմակերպությունը: Յես Ենուկիձեյին մատնանշեցի ավելի պակաս չափով վտանգավոր յեղանակ և հիշեցրի նրան՝ Ենուկիձեյին այն մասին, թե ինչպես բժիշկների ոգնությամբ մեռցրեց Մենժինսկին: Ենուկիձեն պատասխանեց, թե Կիրովի սպանությունը պետք է կատարվի այնպես, ինչպես նշված է և վոր այդ սպանությունն իրենց վրա յեն վերցրել տրոցկիստներն ու զինովևականները, իսկ մեր գործն է՝ չխանգարել:

Ինչ վերաբերում է բժիշկների ոգնությամբ մեռցնելու անվտանգ յեղանակին, ապա Ենուկիձեն ասաց, վոր մոտիկ ժամանակներս կենտրոնը քննության կառնի, թե կուսակցության ու կառավարության ղեկավարներից կոնկրետ



կերպով ում պետք է առաջին հերթին սպանել այդ յեղանակով»:

Կարելի՞ յե արդյոք ավելի առաջ գնալ այդ անսահման ցինիզմի ու խարդախության մեջ, յերբ մարդիկ նողկանք առաջացնող հանդգնությամբ ու սառնարյունությամբ քննարկելիս են յեղել, թե կուսակցության ու կառավարության ղեկավարներից ավելի լավ է սպանել ո՛ւմ և ինչպիսի յեղանակով, խուսափելու համար մերկացումից:

Յագոդան այնուհետև ասում էր՝

«Վորոշ ժամանակից հետո, Ենուկիձեյի հետ իմ հաջորդ հանդիպման ժամանակ, նա հաղորդեց ինձ, վոր կենտրոնը վորոշում է ընդունել ձեռնարկելու մի շարք տեռորիստական ակտեր՝ Քաղբյուրոյի անդամների նկատմամբ, և բացի դրանից, առանձնապես Մաքսիմ Գորկու նկատմամբ: Ենուկիձեն ինձ բացատրեց, վոր «աջ - տրոցկիստական բլոկը» վորպես մերձավոր հեռանկար ունենալով խորհրդային իշխանության տապալումը, հանձին Գորկու տեսնում է վտանգավոր մի դեմք. Գորկին ստալինյան ղեկավարության անհողդողդ կողմնակիցն է և, անկասկած,

դավադրության իրականացման դեպքում բողոքի ձայն կբարձրացնի մեր՝ դավադիրներիս դեմ»։

Ահա՛ թե ինչու չեր դրվել այդ բլոկի կողմից վերջնականապես վճռված հարցը՝ Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկուն մեռցնելու մասին։

Վերացման մասին մեկ վճիռ ևս ընկնում է Վալերիան Վլադիմիրովիչ Կույբիշևի վրա, վորպես լենինյան-ստալինյան Քաղբյուրոյի ակտիվ անդամներից մեկի։

Այդպիսով — այդ կարճ ժամանակամիջոցում յերեք զոհ, վաղաժամ պոկված յերեք հիանալի մարդիկ գերեզման իջան «աջ-տրոցկիստական բլոկի» վորոշմամբ։ Մեր յերկրի յերեք լավագույն մարդիկ,— իրենց հայրենիքին նվիրված զավակներ, — դավաճանների անարգ դավադրության զոհը դարձան։ Յեվ դրանց թվում — ռուսական ու համաշխարհային գրականության պարծանքը — ռուս մեծ գրող, հանճարեղ արվեստագետ Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին։

Նրա յերգերի ու պատմվածքների, վիպակների ու վեպերի յուրաքանչյուր տողը շնչում է ազնվությամբ, հեղափոխական գործողությունների կրակով։ Իզուր չեր նա իր կյանքը կապել մեծ Լենինի և մեծ



Ստալինի հետ, վորպես նրանց լավագույն ու ամենամերձավոր բարեկամը։ Իզուր չե Լենինը բազմիցս գրել, վոր Գորկին հսկայական գեղարվեստական տաղանդ է, վորը շատ օգուտ է բերել և կբերի համաշխարհային պրոլետարական շարժմանը։

Իզուր չեր Լենինը գրում, վոր Գորկին անկասկած պրոլետարական արվեստի խոշորագույն ներկայացուցիչն է, վորն իր գեղարվեստական մեծ յերկերով իրեն ամուր կապել է Ռուսաստանի և ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի հետ։ Գորկին գուշակում եր գալիք փոթորիկը, նա ազդարարում եր մեր շարժման հաղթանակը, պրոլետարական լուսապայծառ բանականության հաղթանակը կապիտալիզմի խավարի ու ստրության նկատմամբ։

Մեծ մարդու հիվանդ սրտին հասցված դավաճանական հարվածներից զոհվեց աշխատավոր մարդկության բարեկամներից լավագույնը, մարվեց մարդկային բանականության և մարդկային գեղեցկության ամենապայծառ ու ամենաուժեղ ջահերից մեկը։ Այդ ջահը մարեցին ահա այս դավաճանները, ահա այս մարդակեր գազանները, վորոնք սառնարյուն կերպով ու դավաճանորեն

հավիտյան կանգնեցրին մեծ մարդու ջերմ ու ազնիվ սրտի բաբախյունը:

Այժմ ամեն ինչ բացված է: Այժմ հայտնի յեն վոչ միայն սպանության յեղանակները, այլև դրանց մոտիվները և իրենց՝ մարդասպանները: Բեսսոնովն ասում է, վոր յերբ ինքը 1934 թվի հուլիսին Փարիզում տեսակցություն է ունեցել Տրոցկու հետ, վորը միշտ չարությամբ ասում եր Գորկու, — ինչպես և Գորկին եր ասում միջազգային լրտեսության ու դավաճանության սրիկա - բանդիտ Տրոցկուն — այն ժամանակ Տրոցկին ասել է, վոր Գորկուն պետք է վերացնել ինչպես էլ լինի, վոր Գորկին լայն ժողովրդականություն է վայելում վորպես Ստալինի մերձավոր բարեկամը, վորպես կուսակցության գլխավոր գծի կիրառող: Տրոցկին ուղղակի հանձնարարություն է անում Բեսսոնովին, հրամայելով այն հաղորդել Պյատակովին: Ինչպես ասում է Բեսսոնովը, այդ հանձնարարությունը տրվել եր ամենակտրական ձևով: Գորկուն ֆիզիկապես վոչնչացնել ինչ գնով էլ լինի: Յեվ ժողովրդի թշնամի ու սրիկա-բանդիտ Տրոցկու այդ հրամանը Բեսսոնովը բերում է այստեղ՝ ՍՍՀՄ — ու հաղորդում Պյատակովին, հաղորդում բլոկին,



վորը — ինչպես այդ ցուցմունք տվեց Յագոդան և ինչպես յես այդ բանը կապացուցեմ քիչ հետո, — ընդունում է այդ հանձնարարությունը, վորոշում և կայացնում Ա. Մ. Գորկուն սպանելու մասին: Դա այնչափ հրեշավոր է, վոր յես դրա վրա անհրաժեշտ եմ համարում կանգ առնել առանձին ու հատկապես:

Առաջին հարցը, վոր յես կուզեյի այստեղ դնել, դա այն հարցն է, թե այդ գործին մասնակցե՞լ են արդյոք Ռիկովը և Բուխարինը, նրանք գիտեյի՞ն արդյոք վոր պատրաստվում է այդ հրեշավոր վոճրագործությունը: Այդ հարցին յես պատասխանում եմ առանց տատանվելու և հաստատապես — այո, գիտեյին, այո, մասնակցել են: Յես չեմ ուզում այստեղ մատնանշել վորևէ այլ ցուցմունք և մասնավորապես Յագոդայի ցուցմունքները, — յես նկատի կունենամ 1) իրենց՝ Ռիկովի ու Բուխարինի ցուցմունքները և 2) այն, ինչ յես անվանում եմ իրերի տրամաբանություն: Ինչպե՞ս է այստեղ գործը: Դուք տեսեք, թե այդ մասին ի՞նչ է ասում Ռիկովը: Ռիկովը ցուցմունք տվեց, վոր ինքը՝ Ռիկովը խոսակցություն է ունեցել Յենուկիձեյի հետ, այսինքն՝ դավադրական բլոկի ամենաակ-

ռիվ մասնակիցներից ու կազմակերպիչներից մեկի հետ: Թե նա վորքան ակտիվ է յեղել սպանությունը կազմակերպելու գործում՝ այդ մասին՝ մենք ունենք Մաքսիմով-Դիկովսկու ցուցմունքները: Յենուկիձեն բազմիցս նրան կանչել է իր մոտ և ցուցումներ տվել, թե ինչպես ավելի լավ է ապահովել Վալերիան Վլադիմիրովիչ Կույբիշևի մահը: Յենուկիձեն այդ «գործով» զբաղվել է Յագոդայի հետ միասին: Ահա, այդ Յենուկիձեյի հետ Ռիկովը խոսակցություն է ունենում — ինչի՞ մասին: Վերցնենք միայն այն, ինչ ասաց ինքը Ռիկովը.
— «Յենուկիձեն ինձ հաղորդեց, վոր տրոցկիստներն ու զինովևականները չափազանց մտահոգված են այն ազդեցությամբ, վոր ձեռք է բերում Գորկին, վոր նա հանդիսանում է Ստալինի և կուսակցության գլխավոր գծի վճռական կողմնակիցը»: Դա նույնն է, ինչ վոր Բեսսոնովը լսել էր Տրոցկուց 1934 թվին և ինչ վոր նա 1934 թվի աշնանը բերել էր այստեղ և հաղորդել այդ բլոկի անդամներին, ղեկավարներին, պարագլուխներին:

Յես միանգամայն ապացուցված և հաստատված եմ համարում հետևյալ փաստերը, վորոնցից բխում է միայն մեկ



հետևություն — այն հետևությունը, վոր Ռիկովը մասնակցել է Ա. Մ. Գորկու մահացումը պատրաստելուն: Նախ՝ 1935 թվին Յենուկիձեն և Ռիկովը խոսում են այն հատուկ դայրույթի մասին, վոր տածում էր բլոկը դեպի Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին: Ճիշտ է, նրանք գործը չուն են տալիս դեպի բլոկի տրոցկիստական - զինովևական մասը, սակայն այդ վոչ մի չափով չի փոխում դրությունը: Յերկրորդ՝ նրանք այդ չար տրամադրությունն արտահայտում են այնպիսի տոնով, վորը ցույց է տալիս, վոր նախապատրաստում եյին բռնի միջոցներ՝ ուղղված Գորկու «քաղաքական ակտիվությանը լիկվիդացիայի յենթարկելուն»: Յեվ յերրորդ՝ Գորկու քաղաքական ակտիվությունը լիկվիդացիայի յենթարկելը ծրագրվում էր ընդհուպ մինչև Գորկու նկատմամբ բռնի միջոցների գործադրումը:

Չորրորդ՝ այդ բռնի միջոցներն իրենց մեջ պարունակում եյին նաև Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու սպանությունը: Այդ բռնի միջոցների մասին Ռիկովը և Բուխարինը գիտեյին: Նրանք գիտեյին, վոր պատրաստվում է Գորկու սպանությունը, նրանք կազմակերպում եյին այդ սպանությունը, հովանավորում եյին այդ սպանությունը:

Ռիկովը և Բուխարինն այդպիսով յեղել են Ա. Մ. Գորկու այդ ամենաստոր սպանության մասնակիցները:

Բուխարինը — աղվեսի ու խոզի այդ անիծյալ խառնուրդը — ինչպե՞ս է պահում իրեն այդ հարցի վերաբերմամբ: Այնպես, ինչպես վայել է աղվեսին ու խոզին: Նա պտտվում է, այս ու այն կողմ է ընկնում: Բայց վերջ ի վերջո ըստ էության Բուխարինն ասում է նույնը, ինչ վոր ասում էր Ռիկովը: Վերցնենք Բուխարինի ցուցմունքներն այդ մասին: Ինձ թույլ տվեք մատնանշել այդ ցուցմունքի հետևյալ մասը. «1935 թվին Տոմսկին ինձ ասաց, վոր Տրոցկին ինչ վոր թշնամական ակցիա կամ թշնամական ակտ է պատրաստում Գորկու դեմ»:

Տոմսկին վորտեղի՞ց գիտեր այդ մասին: Նա գիտեր, իհարկե, Բեսսոնովից, վորն արտասահմանից բերել էր այդ դիրեկտիվը: Իսկ ի՞նչ էր Տրոցկու դիրեկտիվը:—Վոչնչացնել Գորկուն, ֆիզիկապես վոչնչացնել: Բուխարինը ցուցմունք է տալիս՝ «Տոմսկին ասաց, վոր Տրոցկին թշնամական ակցիա կամ թշնամական ակտ է պատրաստում Գորկու դեմ»:

Յես հարց եմ տալիս. ո՞ւմ միջոցով էր Տրոցկին պատրաստում այդ թշնամական



ակցիան: Իհարկե բլոկի միջոցով, վորը Տրոցկու ձեռքումն էր, բլոկի միջոցով, վորի մեջ միահյուսվել էին աջերն ու տրոցկիստները, մենշևիկներն ու էսէռները, բուրժուական նացիոնալիստները և պարզապես բոլոր գույնի, աստիճանի ու կարգի սրիկաները:

Այդ փաստը հաստատված է: Ինքը Բուխարինը խոստովանում է, վոր 1935 թվին, Գորկու մահվանից մեկ տարի առաջ, Տոմսկին հաղորդել էր Բուխարինին, վոր Տրոցկին թշնամական ակտ է պատրաստում Գորկու դեմ: Դա միանգամայն նույնն է, ինչ ասաց Ռիկովը՝ հաղորդելով Յենուկիձեյի հետ ունեցած իր խոսակցությունը: Իսկ այդ իր հերթին նույնն է, ինչ ասաց Բեսսոնովը՝ մեջ բերելով 1934 թվի հուլիսին Փարիզում Տրոցկու հետ ունեցած իր խոսակցությունը: Այստեղ վոչ մի տարագծում չկա:

Մենք գիտենք, թե դավադիրների կողմից ինչպես էր դրված Խորհրդային իշխանության դեմ պայքարելու հարցը: Նրանց մեթոդներն էին — տեռորը, դավաճանությունը և այլն:

Բուխարինն ասում է, թե յերբ խոսում են թշնամական ակտի մասին, կարե-

լի չեն հավանում ամեն ինչ, ընդհուպ մինչև տեռորիստական ակտերը, տատանման ամպլիտուդան այստեղ շատ մեծ է: Բուխարինը խոստովանում է, վոր Գորկու ըսպանությունն այն ժամանակ բացառված չեր: Այդ — քողարկված խոստովանություն է, վորը գլխովին մատնում է Բուխարինին:

Յես արդեն խոսեցի այն յեղանակների մասին, վորոնց ոգնությամբ իրականացվել են յերեք տեռորիստական ակտերը — Մենժինսկու դեմ, Կույբիշևի դեմ և Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու դեմ:

Ուշադրություն է գրավում այն յեղանակը, վորի ոգնությամբ կատարվել են այդ սպանությունները: Այդ՝ առանձնապես մահացման յեղանակն է, «յերաշխիքով ըսպանելու» յեղանակը, վորի մասին խոսում եր Յագոդան, — այդ՝ համագործակիցների հատուկ գիտելիքներին ոգտագործելու միջոցով սպանության յեղանակն է: Վատ չի մտածված: Լևին, Պլետնյով, Կազակով, Մաքսիմով - Դիկովսկի, Կրյուչկով, Բուլանով,—մարդասպանների այդ բանդան, հատկապես նախապատրաստված բանդան, մասնակցել է այդ «գործին»: Յես ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել այն հատուկ



յեղանակի և այդ սպանության իրականացման մեջ այն հատուկ դերի վրա, վոր խաղացել են մեղադրյալ- բժիշկներ Լևինը, Կազակովը և Պլետնյովը: Բայց նախապես յես ուզում եմ կանգ առնել մի քանի դիտողությունների վրա: Քրեական սպանությունների պատմությունը և խրոնիկան մեզ ասում են, վոր վերջին տասնամյակների ընթացքում, պրոֆեսիոնալ մարդասպանների ոգնությամբ կատարվող թունավորումը համարյա վերացել է հրապարակից:

Այդ թունավորողների տեղը գրավեցին բժիշկները: Յեթե դուք բաց անեք Բեռնի համալսարանի պրոֆեսոր բժիշկ Կարլ Եմմերտի դատական բժշկականության դասագիրքը, այնտեղ դուք կգտնեք չափազանց ուսանելի ցուցումներ: Եմմերտը գրում է.

«Թունավորման միջոցով սպանությունները այժմ ավելի սակավ են դարձել անցյալի համեմատությամբ, մասամբ այն պատճառով, վոր նրա համար, ով բժիշկ չէ, ավելի դժվարացել է թույն ձեռք բերելը: Ուստի, պրոֆեսիոնալ թունավորողներ այլևս չեն հանդիպում, ինչպես առաջ: Իսկ յեթե լինում ել են նման դեպքեր, ապա դրանք հաճախ վերաբերում են բժշկական դասի անձանց»:

Ուստի, ամենևին պատահական չէ, վոր Յագոդան իր հրեշավոր դավադրության և դրա իրականացման համար ընտրում է հենց բժիշկներին։ Նա, այսպես ասած, հաշվի յե առնում պատմական կոնյունկտուրան։

Յես, վերջապես, պետք է ասեմ, վոր հենց այդ պլանով է վոճրագործ–դավադրականների կողմից ծրագրված յեղել տեռորիստական ակտը Նիկոլայ Իվանովիչ Յեժովի դեմ։ Չէ՞ որ այդ սպանությունն էլ մտածված էր բավականաչափ նուրբ կերպով — սպանությունն՝ այն օդը թունավորելու միջոցով, վորն իր պաշտոնեական առանձնասենյակում պետք է շնչեր Նիկոլայ Իվանովիչ Յեժովը, ուր թունավորում թթվուտի մեջ լուծված սնդիկով։ Ըստ վորում Յագոդան նախազգուշացնում էր — վոչ մի դեպքում չլուծել ծծմբաթթվուտի մեջ, վորովհետև ծծմբաթթուն հետք է թողնում և կարող է այրել հենց այն վարագույրները, վորոնք պետք է Յագոդայի ցուցումով թունավորվեյին, վորպեսզի այդ օդը շնչելով մեռներ Նիկոլայ Իվանովիչ Յեժովը։

Յես ուզում եմ, ընկեր դատավորներ, հիշեցնել այդ հարցի վերաբերյալ էքսպերտիզայի վորոշ տվյալները, վորոնք վոչ մի



տարակույս չեն թողնում, վոր չափազանց նուրբ, ուխտադրուժ ու սառը այդ պլանը Յագոդան հորինել էր աջ–տրոցկիստական կենտրոնի գլխությամբ ու հավանությամբ — և այդ հատկապես Կույբիշևի, Գորկու ու Նիկոլայ Իվանովիչ Յեժովի վերաբերմամբ, վորին նրանք ուզում էյին վերացնել, վորպեսզի մնային չմերկացված։

Նախ և առաջ յես ձեր ուշադրությունը հրավիրում եմ այն բանի վրա, վոր էքսպերտիզան կազմված էր խորհրդային ու համաշխարհային բժշկական գիտության աչքի ընկնող գործիչներից։ Յես ձեր ուշադրությունն եմ հրավիրում այն բանի վրա, վոր այդ էքսպերտիզան յեկավ միահամուռ յեզրակացության, — էքսպերտիզան հաստատեց, վոր այն միջոցները, վորոնք դավադիրների կողմից ձեռք էյին առնվել Ա. Մ. Գորկուն, Վ. Վ. Կույբիշևին, Մենժինսկուն մեռցնելու համար, իսկապես խորո–րեն մտածված էյին և դրանց արդյունքը յեղավ այդ աչքի ընկնող մարդկանց մահը, վորին ձգտում էյին այդ պարոնայք։

Ուստի, յես ինձ թույլ կտամ հայտարարել, վոր այն մեղադրյալները, վորոնք ներկայացված են մեղադրական յեզրակացության մեջ և վորոնք պաշտպանվում են

յմ կողմից, վորպես պետական մեղադրողի, այդ մասում ես լիակատար կերպով կարելի յե համարել ապացուցված:

Անցնելով մեղադրանքի այդ մասի վերաբերյալ, յես ուզում եմ հատկապես կանգ առնել մեղադրյալներից յերկուսի վրա — Յագոդայի և Լևինի վրա:

Յագոդայի մասին ասելիքս կարճ է: Յագոդան այդ հրեշավոր վոճրագործությունների կազմակերպիչն ու վոգեշնչողն է, նրա պատասխանատվությունն առավել ես ուժեղ է և լուրջ, վորովհետև չե՞ վոր Յագոդան — հենց այնպես Յագոդա չե, նա այն ժամանակ Միացյալ Պետքաղվարչության նախագահի նախկին տեղակալն եր, փաստորեն՝ Միացյալ Պետքաղվարչության նախագահը: Դա այնպիսի մի մարդ եր, վորի վրա յեր ընկած պետական անվտանգության պահպանելու պարտականությունը: Յեթե այն վոճրագործությունները, վոր կատարել է Յագոդան, — վորոնց մեջ նա խոստովանեց, — յեթե նա կատարած լիներ այդ վոճրագործությունների նույնիսկ միլիոներորդական մասը, ապա ա՛յդ դեպքում ել յես իրավունք կունենայի պահանջելու դատարանից, վոր Յագոդան գնդակահարվի:



Լևինն այդ սպանությունների մեջ խաղացել է նույնպես ամենաաչքի ընկնող դեր: Լևինը Յագոդայի ծրագրած սպանությունների գլխավոր կազմակերպիչն է յեղել, նա այդ գործի մեջ ներգրավել է և՛ Կազակովին, և՛ Պլետնյովին, նա — յես կասեյի — այդ գործում յեղել է Յագոդայի աջ ձեռքը, ինչպես վոր Բուլանովը Յագոդայի աջ ձեռքն է յեղել վերջինիս բոլոր վոճրագործությունների մեջ՝ ամբողջությամբ վերցրած:

Յերբ Լևինի ձեռքով սպանվեց Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին, Լևինը — բժշկական գիտությունների դոկտորը,— թերթերում ցավակցություն հրապարակեց — «Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու վերջին որերը»: Այդ ցավակցության մեջ նա գրում եր, հառաչում, հոգոց եր հանում մեծ մարդու մահվան մասին: «Մեծ մարդիկ, — գրում եր նա փարիսեցիաբար, կեղծավոր կերպով, յերկերեսանիորեն, — ապրում և մեռնում են, վորպես մեծ մարդ»: «—Ապրում և մեռնում են վորպես մեծ մարդ»— Լևինը չեր ավելացրել — «այս ցավակցության հեղինակի, սոսկ մարդասպաններից մեկի ձեռքով»:

Այդպիսով յերկերեսանիությունը, ուխտադրժությունը, կեղծավորությունն

խմ կողմից, վորպես պետական մեղադրողի, այդ մասում ևս լիակատար կերպով կարելի չե համարել ապացուցված:

Խոսելով մեղադրանքի այդ մասի վերաբերյալ, յես ուզում եմ հատկապես կանգ առնել մեղադրյալներից յերկուսի վրա — Յագոդայի և Լևինի վրա:

Յագոդայի մասին անելիքս կարճ է: Յագոդան այդ հրեշավոր վոճրագործությունների կազմակերպիչն ու վոգեշնչողն է, նրա պատասխանատվությունն առավել ևս ուժեղ է և լուրջ, վորովհետև չե՞ վոր Յագոդան — հենց այնպես Յագոդա չե, նա այն ժամանակ Միացյալ Պետքաղվարչության նախագահի նախկին տեղակալն եր, փաստորեն՝ Միացյալ Պետքաղվարչության նախագահը: Դա այնպիսի մի մարդ եր, վորի վրա յեր ընկած պետական անվտանգության պահպանելու պարտականությունը: Յեթե այն վոճրագործությունները, վոր կատարել է Յագոդան, — վորոնց մեջ նա խոստովանեց, — յեթե նա կատարած լիներ այդ վոճրագործությունների նույնիսկ միլիոներորդական մասը, ապա ա՛յդ դեպքում ել յես իրավունք կունենայի պահանջելու դատարանից, վոր Յագոդան գնդակահարվի:



Լևինն այդ սպանությունների մեջ խաղացել է նույնպես ամենաաչքի ընկնող դեր: Լևինը Յագոդայի ծրագրած սպանությունների գլխավոր կազմակերպիչն է յեղել, նա այդ գործի մեջ ներգրավել է և՛ Կազակովին, և՛ Պլետնյովին, նա — յես կասեյի — այդ գործում յեղել է Յագոդայի աջ ձեռքը, ինչպես վոր Բուլանովը Յագոդայի աջ ձեռքն է յեղել վերջինիս բոլոր վոճրագործությունների մեջ՝ ամբողջությամբ վերցրած:

Յերբ Լևինի ձեռքով սպանվեց Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին, Լևինը — բժշկական գիտությունների դոկտորը, — թերթերում ցավակցություն հրապարակեց — «Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու վերջին որերը»: Այդ ցավակցության մեջ նա գրում եր, հառաչում, հոգոց եր հանում մեծ մարդու մահվան մասին: «Մեծ մարդիկ, — գրում եր նա փարիսեցիաբար, կեղծավոր կերպով, յերկերեսանիորեն, — ապրում և մեռնում են, վորպես մեծ մարդ»: «— Ապրում և մեռնում են վորպես մեծ մարդ» — Լևինը չեր ավելացրել — «այս ցավակցության հեղինակի, ստոր մարդասպաններից մեկի ձեռքով»:

Խայտառակ յերկերեսանիությունը, ուխտադրժությունը, կեղծավորությունն

այստեղ մրցում են իր՝ այսպես ասած՝ «բուժման» զոհի գլխավերևում վողբացող թունավորողի ընկերության հետ:

Այդպիսին է այդ Լևինը: Հեռու չի գնացել Յագոդայից:

Յեզրափակման մեջ յես կուզեյի ձեզ հիշեցնել Յագոդայի ցուցմունքը, վորի մեջ նա ցույց է տալիս իր իսկական բարոյական - մարդկային դեմքը — յեթե ինչարկե, այդ արտահայտությունն այստեղ կարելի յե գործածել:

Ահա քաղվածքներ Յագոդայի ցուցմունքից՝ գործ-թերթ 58.

«Իմ ամբողջ կյանքի ընթացքում յես ման եմ յեկել դիմակավորված, ինձ հանդես եմ բերել վորպես անհաշտ բոլշևիկ: Մինչդեռ իրոք բոլշևիկ, դրա իսկական հասկացողությամբ, յես յերբեք չեմ յեղել»:

Յեվ ապա՝

«Իմ մանր — բուրժուական ծագումը, տեսական պատրաստականության բացակայությունը, — այս բոլորը, Խորհրդային իշխանության կազմակերպման սկզբից հենց իմ մեջ անվստահություն ստեղծեց կուսակցության գործի վերջնական հաղթանակի նկատմամբ»:



«...Այդ պատճառով էլ, յես համաձայնության յեկա Ռիկովի հետ աջերի մեջ իմ հատուկ դիրքի վերաբերյալ»:

Բանից դուրս է գալիս, վոր Ռիկովը բավական վորոշակի կերպով ազդել է նույնիսկ Յագոդայի վրա: Չէ՞ վոր ըստ եյության ասած, այն, ինչ ասում է Յագոդան— այդ՝ քաղաքական կարյերիստի ու նողկալի սրիկայի ամենահին դավաճանական, յերկերեսանի դպրոցն է, չէ՞ վոր այդ Ժոզեֆ Ֆուշեյի սիստեմն է:

«Պսակազերծ արված թագավորի դահիճը հանդիսավոր կերպով մտնող յոթհարյուր հիսունի թվում լուռ, յեռագույն ժապավենը կրծքին կապած մտնում է ժողովրդական ներկայացուցիչ Ժոզեֆ Ֆուշեն, Նանտ քաղաքի պատգամավորը: Տոնզուրն արդեն աճել էր, հոգևորականի զգեստը վաղուց դեն է շպրտված — ինչպես և բոլոր այդտեղ յեղածները, նա հագել էր քաղաքացիական զգեստ, առանց վորևէ զարդարանքի:

Ինչպիսի՞ տեղ կընտրի Ժոզեֆ Ֆուշեն: Ռադիկալների մեջ՝ սարի վրա, թե՞ չափավորների հետ հովտում: Ժոզեֆ Ֆուշեն յերկար չի դանդաղում. նա

ճանաչում է միայն մեկ կուսակցություն, վորին հավատարիմ է մնում մինչև վերջ — այն, վորն ուժեղ է, մեծամասնության կուսակցությունը: Այս անգամ ևս նա իր մեջ ծանր ու թեթև է անում և հաշվում ձայները. նա տեսնում է, վոր տվյալ մոմենտին ուժը դեռ ժիրոնդիստների կողմն է, չափավորների կողմը: Յեվ ահա նա նստում է նրանց նստարանին, Կոնդորսեյի, Ռոլանի, Սերվանի կողքին, նրանց հետ, ովքեր իրենց ձեռքումն եյին պահում մինիստրական պոստերը, ազդեցություն ունեին բոլոր նշանակումների և շահույթի բաշխման վրա: Նրանց միջավայրում նա իրեն զգում է վստահ, այնտեղ է նա տեղ գրավում»:

Ահա այն աղբյուրը, վորից քաղել է իր հոգևոր ուժերը Յագոդան, յեթե նա յերբևիցե ծանոթ է յեղել Ժոզեֆ Ֆուշեյի կյանքին ու գործունեյությանը, — յես դրանում կասկածում եմ, վորովհետև ցուցմունքներից և գործի նյութերից յերևում է, վոր նա գրականության մեջ ծանոթ է միայն մեկ գրքի հետ: Այդ Ալեքսանդր Դյումայի «Յերեք հրացանակիրներն» է, վորոնք իդեալ եյին Յագոդայի համար, վորը, —



ինչպես այդ յերևում է Բուլանովի ցուցմունքներից, — ասել է, թե վորպեսզի ապահովել իշխանության գրավման հաջողությունը, հարկավոր է իր համար ընտրել մի քանի տասնյակ այնպիսի կարիճների, ինչպիսին յերեք հրացանակիրներն են, վոր նրանց հետ կարելի յե անել ամեն բան, ինչ կամենաք:

Այսպիսին է Յագոդան, վորին մեղադրյալների աթոռի վրա հատկացված է լուրջ տեղ, Բուխարինի և Ռիկովի կողքին: Այդ — խոշորագույն դավադիրներից մեկն է, Խորհրդային իշխանության ամենաաչքի ընկնող թշնամիներից մեկը, ամենալկտի դավաճաններից մեկը, մի մարդ, վորը փորձում եր հենց ներքգործժողկոմատում խումբ կազմակերպել և մասամբ արդեն կազմակերպել եր այն՝ դավաճաններ Պաուկերից, Վոլովիչից, Գայից, Վինեցկուց և լեհական ու գերմանական այլ լրտեսներից ու հետախույզներից: Այդպիսին է նաև ինքը Յագոդան, վորը փոխանակ մեր պանծալի հետախուզությունն ուղղելու ի բարօրություն խորհրդային ժողովրդի, ի բարօրություն սոցիալիստական շինարարության, փորձում եր այն շուռ տալ մեր ժողովրդի

դեմ, մեր հեղափոխության դեմ, սոցիալիզմի դեմ:

Չհաջողվե՛ց, ձախողվե՛ց: Յագոդան մերկացվեց, դուրս շպրտվեց մեր պետական ապարատից, նստեցվեց մեղադրյալների աթոռին, նա զինաթափ է արված և այժմ պետք է դուրս շպրտվի, բոլորովին ջնջվի կյանքից:



# ԻՐԱՎԱԲԱՆԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

Ես վերջացնում եմ: Եզրափակման մեջ ես ուզում եմ դնել մի քանի հարցեր, որոնք ես կանվանեի իրավաբանական հարցեր:

Նախ և առաջ — մասնակցության հարցը: Ինչպես ցույց տվեց դատաքննությունը, բոլոր մեղադրյալները հավասար չափով չեն մասնակցել այն ոճրագործություններին, որոնք քննության առնվեցին այս դատավարության ընթացքում:

Այստեղից հարց է ծագում, թե մեղադրյալներից յուրաքանչյուրն ի՞նչ չափով ու ի՞նչ սահմանի կարող է և պետք է պատասխանատու լինի մեղադրական եզրակացությամբ նրանց ներկայացված մեղադրանքների համար:

Երկրորդ հարցը: Ի՞նչ չափով և ի՞նչ սահմանով են ապացուցված մեղադրյալներին ներկայացված մեղադրանքները:

Յերրորդ հարցը — ինչպիսի՞ պատժի յեն արժանի մեղադրյալները:

Յես ամենից առաջ կպատասխանեմ յերկրորդ հարցին: Ապացուցվա՞ծ են արդյոք մեղադրյալների կատարած վոճրագործությունները և ի՞նչ չափով: Յես կարծում եմ, վոր դուք, ընկեր դատավորներ, ձեր դատավճռի մեջ այդ հարցին կպատասխանեք դրականորեն — այո՛, ապացուցվա՛ծ են: Ապացուցված են հենց իրենց՝ մեղադրյալների խոստովանությամբ, ապացուցված են դատարանի առջևով անցած վկաների կողմից, ապացուցված են բժշկական և եքսպերտիզայի յեզրակացությամբ, ապացուցված են իրեղեն ապացույցներով:

Այն բոլոր ապացույցների գումարը, վոր կարող են լինել քրեական դատավարության ժամանակ, այստեղ այժմ կան դատարանի տրամադրության տակ: Այդ ապացույցների հիման վրա, դատարանը կկարողանա սահմանել իր վերջնական վճիռը, այս վոճրագործությունները կատարած այս կամ այն վոճրագործի հանցավորության աստիճանի մասին:

Յերկրորդ — մեղադրյալներից յուրաքանչյուրը մեր օրենքի համաձայն ի՞նչ չափով պետք է պատասխանատու լինի այդ



դավադրական բանդայի կողմից կատարված բոլոր վոճրագործությունների գումարի համար: Յես այդ հարցին պատասխանում եմ — լիակատար չափով: Ինչո՞ւ:

Յուրաքանչյուր մեղադրյալ պետք է պատասխանատու լինի բոլոր վոճրագործությունների գումարի համար, վորպես դավադրական կազմակերպության անդամ, վորի հանցավոր խնդիրներն ու նպատակները, դրանց իրականացման հանցավոր մեթոդները, հայտնի յեն յեղել նրանցից յուրաքանչյուրին, հավանության են արժանացած յեղել և ընդունված՝ յուրաքանչյուրի կողմից: Այստեղ մենք միայն նկատում ենք յուրահատուկ «աշխատանքի բաժանում»՝ հանցավոր գործունեության մեջ, նայած բանդայի յուրաքանչյուր մասնակցի հատուկ հատկությունների և նրա տրամադրության տակ յեղած միջոցներին: Այդ միանգամայն բնական է և օրինաչափական՝ ամբողջ դավադրության շահերի տեսակետից:

Այս գործում, ընկեր դատավորներ, առկա յե դավադրական խումբը, տարբերկրյա հետախուզությունների գործակալությունը, վորը միավորված է յեղել նրա բոլոր ան-

դամների համար ընդհանուր կամքով, նրանց բոլորի համար միասնական հանցավոր նպատակով։ Այս կամ այն ոճրագործի կատարած կոնկրետ ոճիրները, այդ — հանցավոր գործունեության՝ բոլոր մեղադրյալների համար միասնական այդ պլանի մասնավոր դեպքերն են միայն։

Հանցավոր գործունեության այդ ընդհանրությունն իրավաբանորեն արտահայտված է ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58—11 հոդվածով բոլոր մեղադրյալներին ներկայացված մեղադրանքի մեջ։

Այդ, սակայն, չի նշանակում, որ բոլորը պետք է պատասխանատու լինեն հավասարապես։ Այդ չի բացառում դատարանի պարտականությունը՝ անհատականացնելու պատիժը, նայած ամբողջ գործի մեջ յուրաքանչյուր մեղադրյալի կոնկրետ դերին։

Այդ տեսակետից յես գտնում եմ, որ մեղադրյալների ընդհանուր թվից պետք է առանձնացնել յերկուսին—դրանք են՝ Ռակովսկին և Բեսսոնովը։ Յես գտնում եմ, որ Ռակովսկին, որը թեև ամենածանր ոճրագործություններ է կատարել Խորհրդային պետության դեմ, Խորհրդային իշխանության դեմ, այդ դավադրության մեջ անե-



ցած իր ամբողջ դիրքով, «աջ-տրոցկիստական բլոկի» կատարած բոլոր կարևորագույն ոճրագործություններից իր — յեթե կարելի յե այսպես արտահայտվել — որոշ հեռվի կտրվածությամբ, արժանի յե այն բանին, որ նրա նկատմամբ գործադրվի պատժի պակաս չափով խիստ միջոց, քան մյուս մեղադրյալների նկատմամբ։

Նույնը կարելի յե ասել որոշ չափով նաև Բեսսոնովի մասին, որն, իհարկե, տարբերվում է Չերնովից, Ռոզենհոլցից, Կրեստինսկուց, կամ Ռիկովից, թեկուզ և այն բանով, որ նրա դերը սահմանափակվել է կապավորի դերով, որը թեև նույնպես հանցավոր բան է, բայց իր եությամբ պետք է գնահատվի այլ կերպ, քան նույն գործով հիմնական մեղադրյալների հանցագործությունները։

Այս անձանց վերաբերմամբ յես հնարավոր կհամարեյի գործադրել 1937 թվի հոկտեմբերի 2-ի օրենքը, որը դատարանին թույլ է տալիս առանձին դեպքերում պատժի չափն ընտրել տասը տարի ազատազրկման և սոցիալական պաշտպանության բարձրագույն չափի միջև՝ միջինը։ Յես գտնում եմ, որ Ռակովսկու և Բեսսոնովի վերա-

բերմամբ կարելի չէ սահմանափակվել տարվա բանտարկությամբ։

Մեղադրական եզրակացությամբ, բոլոր մեղադրյալները մեղադրված են այն բանում, որ նրանք 1932—33 թվականին օտարերկրյա պետությունների հետախուզությունների առաջադրանքով կազմել են դավադրական խումբ «աջ – տրոցկիստական բլոկ» անունով, որն իրեն նպատակ էր դրել՝ կատարել այն գործողությունները, որոնք այստեղ լիովին ապացուցվեցին։

Ապացուցված է, որ այդ բլոկը կազմված է եղել մի քանի օտարերկրյա պետությունների հետախուզությունների գործակալներից։ Ապացուցված է, որ «աջ-տրոցկիստական բլոկը» սիստեմատիկ կերպով ապօրինի հարաբերություններ է պահպանելիս եղել մի քանի օտարերկրյա պետությունների հետ, իր հանցավոր դիտավորությունները իրականացնելու համար, Խորհրդային իշխանությունը տապալելու և ԽՍՀ Միությունում կալվածատերերի ու կապիտալիստների իշխանություն հաստատելու համար նրանցից օգնություն ստանալու նպատակով։

Ապացուցված է, որ «աջ-տրոցկիստական բլոկը» սիստեմատիկաբար լրտեսու-



թյամբ և զբաղվելիս եղել հօգուտ այդ պետությունների, նրանց հետախուզություններին մատակարարելով պետական կարևորագույն գաղտնի նյութեր։

Ապացուցված է, որ «աջ-տրոցկիստական բլոկն» այդ նպատակներով սիստեմատիկաբար վնասարարական ու դիվերսիոն ակտեր է ի կատար ածել մեր ժողովրդական տնտեսության զանազան բնագավառներում — արդյունաբերության, գյուղատնտեսության, ֆինանսների, կոմունալ տնտեսության բնագավառում, երկաթուղիներում և այլն։

Ապացուցված է, որ «աջ-տրոցկիստական բլոկը» մի շարք տեռորիստական ակտեր է կազմակերպել ՀամԿ(բ)Կ և Խորհրդային կառավարության ղեկավարների դեմ, որ այդ «աջ-տրոցկիստական բլոկը» տեռորիստական ակտեր է ի կատար ածել Ս. Մ. Կիրովի, Վ. Ռ. Մենժինսկու, Վ. Վ. Կույբիշևի, Ա. Մ. Գորկու դեմ, ինչպես նաև իրականացրել է Մ. Ա. Պեշկովի մահացումը։

Ապացուցված է, որ բլոկը մի շարք տեռորիստական ակտեր է կազմակերպած եղել մեր կուսակցության և կառավարու-

թյան ղեկավարների դեմ, բայց բարեբախտաբար չի կարողացել ի կատար ածել դըրանք:

Ահա սույն գործի հանգամանքները: Այսպիսին է այս գործում մեղադրյալներից յուրաքանչյուրի ունեցած դերը, մեղադրյալների՝ որոնք այժմ, ընկեր դատավորներ, սպասում են ձեր դատավճռին:



# ՅԵԶՐԱՓԱԿՈՒՄ

Դժվար է բառեր գտնել նկարագրելու համար մեղադրյալների կատարած ոճրագործությունների հրեշավորությունը: Ասենք— հարց եմ տալիս ձեզ — դրա համար հարկավո՞ր են արդյոք դարձյալ նորեն խոսքեր: Ո՛չ, ընկեր դատավորներ, այդ խոսքերը հարկավոր չեն: Բոլոր խոսքերն արդեն ասված են, ամեն ինչ քննության է առնված ամենայն մանրամասնությամբ: Ամբողջ ժողովուրդն այժմ տեսնում է, թե ինչ են ներկայացնում այս հրեշները:

Մեր ժողովուրդը և ամբողջ աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ սպասում են ձեր արդար դատավճռին: Թո՛ղ ուրեմն ձեր դատավճիռը մեր ամբողջ մեծ երկրում հնչի որպես նաբատի ղողանջ, որը կոչում է նոր սխրագործությունների և նոր հաղթանակների: Թո՛ղ ձեր դատավճիռը որոտա որպես խորհրդային արդար պատժի թարմացնող ու ամեն ինչ մաքրող ամպրոպ:

թյան ղեկավարների դեմ, բայց բարեբախտաբար չի կարողացել ի կատար ածել դը-րանք:

Ահա սույն գործի հանգամանքները: Այսպիսին է այս գործում մեղադրյալներից յուրաքանչյուրի ունեցած դերը, մեղադրյալների՝ որոնք այժմ, ընկեր դատավորներ, սպասում են ձեր դատավճռին:



# ՑԵՋՐԱՓԱԿՈՒՄ

Դժվար է բառեր գտնել նկարագրելու համար մեղադրյալների կատարած ոճրագործությունների հրեշավորությունը: Ասենք— հարց եմ տալիս ես — դրա համար հարկավո՞ր են արդյոք դարձյալ որևէ խոսքեր: Ո՛չ, ընկեր դատավորներ, այդ խոսքերը հարկավոր չեն: Բոլոր խոսքերն արդեն ասված են, ամեն ինչ քննության է առնված ամենայն մանրամասնությամբ: Ամբողջ ժողովուրդն այժմ տեսնում է, թե ինչ են ներկայացնում այս հրեշները:

Մեր ժողովուրդը և ամբողջ աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ սպասում են ձեր արդար դատավճռին: Թո՛ղ ուրեմն ձեր դատավճիռը մեր ամբողջ մեծ երկրում հնչի որպես նաբաթի ղողանջ, որը կոչում է նոր սխրագործությունների և նոր հաղթանակների: Թո՛ղ ձեր դատավճիռը որոտա որպես խորհրդային արդար պատժի թարմացնող ու ամեն ինչ մաքրող ամպրոպ:

*Մեր ամբողջ յերկիրը — փոքրից մինչև մեծ — սպասում և պահանջում է մեկ բան՝ դավաճաններին ու լրտեսներին, վորոնք մեր Հայրենիքը վաճառում էին թըշնամուն, գնդակահարել ինչպես պարշիվ շըների:*

*Մեր ժողովուրդը պահանջում է մեկ բան՝ ճզմել անիծյալ իժերին:*

*Կանցնի ժամանակը: Անարգ դավաճանների գերեզմանների վրա փուշ ու տատասկ կաճի՝ ծածկված խորհրդային ազնիվ մարդկանց, խորհրդային ամբողջ ժողովրդի հավիտյան անարգանքով:*

*Իսկ մեզ վրա, մեր յերջանիկ յերկրի վրա, առաջվա նման պարզ ու հրճվալից իր լուսավոր ճառագայթներով կշողշողա մեր արեգակը: Մենք, մեր ժողովուրդը, անցյալի վերջին պղծությունից ու զարշանքից մաքրված ճանապարհով, մեր սիրելի առաջնորդ և ուսուցիչ մեծ Ստալինի գլխավորությամբ առաջվա նման կքայլենք առաջ ու առաջ՝ դեպի կոմունիզմը:*



# ԴԱՏԱՎՃԻՌ

## ՀԱՆՈՒՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ՝ ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՆ՝ ԿԱԶՄՎԱԾ՝

ՆԱԽԱԳԱՀՈՂ — ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի Զինվորական Կոլեգիայի նախագահի՝ բանակի զինիրավաբան Վ. Վ. ՈՒԼՐԻԽԻՑ, ԱՆԴԱՄՆԵՐ—ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի Զինվորական Կոլեգիայի նախագահի տեղակալ՝ կորպուսի զինիրավաբան Ի. Ո. ՄԱՏՈՒԼԵՎԻՉԻՑ յեվ ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի զինվորական Կոլեգիայի անդամ՝ դիվիզիայի զինիրավաբան Բ. Ի. ԻՑԵՎԼԵՎԻՑ, ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅԱՄԲ— առաջին կարգի զինիրավաբան Ա. Ա. ԲԱՏՆԵՐԻ, մասնակցու-

թյամբ պետական մեղադրող — ԽՍՀ Միության դատախազ ընկեր Ա. ՅԱ. ՎԻՇԻՆՍԿՈՒ յեվ դատապաշտպանների Մոսկվայի կոլեգիայի անդամներ ընկ. ընկ. Ի. Դ. ԲՐԱՈՒԴԵՅԻ ու Ն. Վ. ԿՈՄՄՈԴՈՎԻ, Մոսկվա քաղաքում, 1938 թվի մարտի 2—13-ը տեղի ունեցած դատական դռնբաց նիստում քննության առավ գործ-ըստ մեղադրանքի

1. *Նիկոլայ Իվանովիչ* Բուխարինի—1888 *թվի ծնված*,
2. *Ալեքսեյ Իվանովիչ* Ռիկովի—1881 *թվի ծնված*,
3. *Գենրիխ Գրիգորյեվիչ* Յագոդայի—1891 *թվի ծնված*,
4. *Նիկոլայ Նիկոլայեվիչ* Կրեստինսկու—1883 *թվի ծնված*,
5. *Քրիստիան Գեորգիևիչ* Ռակովսկու—1873 *թվի ծնված*,
6. *Արկադի Պավլովիչ* Ռոզենհոլցի—1889 *թվի ծնված*,
7. *Վլադիմիր Իվանովիչ* Իվանովի— 1893 *թվի ծնված*,
8. *Միխայիլ Ալեքսանդրովիչ* Չերնովի—1891 *թվի ծնված*,



9. *Գրիգորի Ֆյոդորովիչ* Գրիկոյի — 1890 *թվի ծնված*,
10. *Իսաակ Աբրամովիչ* Զելենսկու—1890 *թվի ծնված*,
11. *Սերգեյ Ալեքսեևիչ* Բեսսոնովի—1892 *թվի ծնված*,
12. *Ակմալ* Իկրամովի— 1898 *թվի ծընված*,
13. *Ֆայզուլլա* Խոջաևի—1896 *թվի ծընված*,
14. *Վասիլի Ֆոմիչ* Շարանգովիչի—1897 *թվի ծնված*,
15. *Պրոկոպիյ Տիմոֆեևիչ* Զուբարյովի—1886 *թվի ծնված*,
16. *Պավել Պետրովիչ* Բուլանովի—1895 *թվի ծնված*,
17. *Լև Գրիգորևիչ* Լևինի—1870 *թվի ծնված*,
18. *Դմիտրի Դմիտրիևիչ* Պլետնյովի — 1872 *թվի ծնված*,
19. *Իգնատի Նիկոլաևիչ* Կազակովի—1891 *թվի ծնված*,
20. *Վենիամին Ադամովիչ* (*Աբրամովիչ*) Մաքսիմով—Դիկովսկու 1900 *թվի ծնված*,
21. *Պյոտր Պետրովիչ* Կրյուչկովի—1889 *թվի ծնված*,

վորոնք բոլորը մեղադրվում են ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58—1 Ա, 58—2, 58—7, 58—8, 58—9 և 58—11 հոդվածներով նախատեսված հանցագործությունների մեջ, իսկ Իվանովը, Զելենսկին և Զուբարյովը, բացի դրանից, ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58—13 հոդվածով նախատեսված հանցագործությունների մեջ:

Նախնական և դատական քննությամբ հաստատված է, որ՝

Մեղադրյալներ Բուխարինը, Ռիկովը, Յագոդան, Կրեստինսկին, Ռոզենհոլցը, Գրինկոն, Շարանգովիչը, Խոջաևը, Իկրամովը, Իվանովը, Զուբարյովը, Զելենսկին և Չերնովը հանդիսանալով Խորհրդային իշխանության անհաշտ թշնամիներ, 1932—33 թվականներին, ԽՍՀՄ-ի նկատմամբ թշնամական օտարերկրյա պետությունների հետախուզությունների առաջադրանքով կազմակերպել են դավադրական խումբ՝ «աջ-տրոցկիստական բլոկ» անունով, որը միավորել էր Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի, Միջին Ասիական հանրապետությունների տրոցկիստների, աջերի, զինովևականների, մենշևիկների, էսէռների, բուրժուա-



կան-նացիոնալիստների ընդհատակյա հակախորհրդային խմբերը:

«Աջ-տրոցկիստական բլոկն» իրեն նպատակ էր դրել տապալել ԽՍՀ Միությունում գոյություն ունեցող սոցիալիստական հասարակական ու պետական կարգը, վերականգնել ԽՍՀՄ-ում կապիտալիզմն ու բուրժուազիայի իշխանությունը՝ Խորհրդային Միության տնտեսական ու պաշտպանական հզորությունը թուլացնելու նպատակին ուղղված դիվերսիոն-վնասարարական, տեռորիստական, լրտեսական-դավաճանական գործունեության միջոցով և աջակցել օտարերկրյա ագրեսորներին ԽՍՀՄ-ի պարտության ու մասնատման գործում:

Զրկված լինելով ԽՍՀՄ-ի ներսում վորևէ հենարանից, «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարներն իրենց հանցավոր դիտավորություններն իրականացնելու նպատակով, ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու և հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկի» առանձին մասնակիցների միջոցով համաձայնություն էին կնքել մի քանի օտարերկրյա պետությունների ներկայացուցիչների հետ՝ ԽՍՀՄ-ում Խորհրդային իշխանությունը տապալելու գործում զինված

օգնություն ցույց տալու մասին, ԽՍՀՄ-ի մասնատման և Ուկրաինան, Բելոռուսիան, Պրիմորյեն, Միջին-Ասիական ու Անդրկովկասյան հանրապետությունները հօգուտ հիշյալ օտարերկրյա պետությունների ԽՍՀ Միությունից անջատելու պայմանով:

Օտարերկրյա պետությունների ներկայացուցիչների հետ «աջ-տրոցկիստական բլոկի» այդ դավաճանական համաձայնությունը հեշտանում էր այն բանով, որ հակահեղափոխական դավադրության ղեկավար մասնակիցները հանդիսանում էին օտարերկրյա հետախուզությունների ագենտները և երկար տարիների ընթացքում լրտեսական գործունեություն էին կատարում հօգուտ այդ հետախուզությունների:

Կրեստինսկին, ժողովրդի թշնամի — գերմանական ու անգլիական հետախուզությունների գործակալ Լ. Տրոցկու ուղղակի առաջադրանքով 1921 թվին դավաճանական կապի մեջ է մտնում գերմանական ռեյխսվերի հետ և գերմանական լրտես է յեղել մինչև 1937 թվին ձերբակալվելու օրը, իր լրտեսական աշխատանքի համար և տրոցկիստական կազմակերպության հանցավոր գործունեության համար յուրաքան-



չյուր տարի ստանալով 250 հազար գերմանական մարկ՝ փողով:

Ռոզենհոլցը գերմանական գլխավոր շտաբի համար լրտեսական աշխատանքն սկսել է 1923 թվին, անգլիական հետախուզության համար՝ 1926 թվին:

Ռակովսկին անգլիական հետախուզության գործակալ է յեղել 1924 թվից և ճապոնական լրտես՝ 1934 թվից:

Չերնովը հօգուտ Գերմանիայի լրտեսական աշխատանքն սկսել է 1928 թվին, գերմանական հետախուզության հետ կապվելով հայտնի մենշևիկ-վտարանդի Դանի աջակցությամբ:

Շարանգովիչը ներգրավված է յեղել լեհական հետախուզության կողմից ու լրտեսական աշխատանքի համար ԽՍՀՄ է ուղարկվել 1921 թվին և լեհական լրտես է յեղել մինչև ձերբակալվելու օրը:

Գրինկոն գերմանական ու լեհական լրտես է յեղել 1932 թվից:

Ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու և «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավար մասնակիցներ Բուխարինի, Ռիկովի ու Յագոդայի առաջադրանքով, «աջ-տրոցկիստական բլոկի» անդամներ Ռոզենհոլցը, Կրեստինսկին, Ռակովսկին, Գրինկոն և Բեսսոնովը բացա-

հայտարեն դավաճանական նպատակներով անմիջական հարաբերության մեջ են մտել ԽՍՀՄ-ի նկատմամբ թշնամի օտարերկրյա պետությունների ներկայացուցիչների հետ և նրանց հետ բանակցություններ են վարել օտարերկրյա ագրեսորներին օգնություն ցույց տալու ձևերի մասին (տեռորիստական և դիվերսիոն-վնասարարական ակտերի կազմակերպումը, լրտեսությունը), այն դեպքում, երբ նրանք հարձակվեին Խորհրդային Միության վրա:

«Աջ-տրոցկիստական բլոկի»ղեկավարները, այդ թվում Ռիկովը, Բուխարինը և Յագոդան ոչ միայն լավ իրազեկ են եղել իրենց համագործակիցների լրտեսական գործունեության մասին, այլև ամեն կերպ խրախուսել են լրտեսական կապերի ընդարձակումը և իրենք հենց ցուցումներ են տվել «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցներին՝ օտարերկրյա պետությունների ներկայացուցիչների հետ նրանց դավաճանական բանակցությունների ժամանակ, արագացնելով օտարերկրյա ինտերվենցիայի պատրաստումը:

Օտարերկրյա հետախուզությունների ուղղակի դիրեկտիվներով, «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցները կազմակերպել են դի-



վերսիոն - վնասարարական խմբեր, դրանով ընդգրկելով արդյունաբերություն, տրանսպորտ, գյուղատնտեսություն ու ապրանքաշրջանառության սիստեմի մի շարք ձեռնարկություններ, և քայքայիչ գործունեություն են կատարել, խնդիր ունենալով քայքայել երկրի տնտեսական կյանքն ու թուլացնել Խորհրդային Միության պաշտպանունակությունը:

Ճապոնական հետախուզության ցուցումներով, «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցները Հեռավոր Արևելյան երկրամասում կազմակերպել են ռազմական բեռ փոխադրող գնացքի խորտակումը՝ Վոլոչաևկա կայարանում և № 501 գնացքի խորտակումը Խոր - Դորմիդոնտովկա տեղամասում, ինչպես նաև մի քանի դիվերսիաներ են ի կատար ածել Սուչանի հանքերում: Այդ բոլոր դիվերսիաներն ուղեկցվել են մարդկային զոհերով:

Ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու դիրեկտիվով և օտարերկրյա պետությունների ներկայացուցիչների հետ ունեցած համաձայնության հիման վրա, Ռոզենհոլցն Արտաքին Առևտրի Ժողկոմատի սիստեմում կատարել է վնասարար աշխատանք, վորի նպատակն է եղել օգնություն ցույց տալ Գերմանիային ու Ճապոնիային և վորը տնտեսական

վնաս է հասցրել ԽՍՀՄ-ին: Բացի դրանից, Ռոզենգոլցը վալյուտային զանազան կոմբինացիաների միջոցով սիստեմատիկաբար ֆինանսավորել է Տրոցկուն:

Չերնովը գերմանական հետախուզության առաջադրանքով և Ռիկովի ցուցումներով օգտագործել է իր պատասխանատու պաշտոնական դիրքը ԽՍՀՄ-ի հողային օրգաններում, իր համագործակիցների միջոցով մի շարք խոշոր դիվերսիոն վնասարարական ակտեր կազմակերպելու համար՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն իջեցնելու և գյուղատնտեսական մթերքների մոբիլիզացիոն պաշարները փչացնելու ուղղությամբ, ձիերի ու խոշոր եղջերավոր անասունների թիվը կրճատելու ուղղությամբ, մասնավորապես արհեստական համաճարակներ տարածելու ճանապարհով, ընդ որում միայն Արևելյան Սիբիրում 1936 թվին այդ բանի հետևանքով սատկել է մոտ 25 հազար ձի:

Գրինկոն «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարների և գերմանական հետախուզության առաջադրանքով, բնակչության մեջ դժգոհություն առաջացնելու և դրանով իսկ իր կողմնակիցների հավաքագրումը հեշտացնելու նպատակով ֆինանսների ժողովրդա-



կան կոմիսարիատի սիստեմում կատարել է վնասարարական լայն աշխատանք, որն արտահայտվել է աշխատավարձի վճարումը ձգձգելու, խնայողական դրամարկղերի կողմից բնակչությանը վատ սպասարկելու, որոշ հարկեր գյուղացիներից ապօրինի կերպով գանձելու և վնասարարական այլ ձեռնարկումների մեջ:

Շարանգովիչը հանդիսանալով բելոռուսական նացիոնալ-ֆաշիստական կազմակերպության ղեկավարներից մեկը, լեհական հետախուզական օրգանների և «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարների—Ռիկովի ու այլոց առաջադրանքով, դիվերսիոն-վնասարարական լայն գործունեություն էր ծավալել Բելոռուսիայի գյուղատնտեսության, անասնապահության և արդյունաբերության բնագավառում, դրանով իսկ հեշտացնելով ագրեսորների խնդիրների իրականացումը՝ Բելոռուսիայի ԽՍՀ-ի վրա նրանց զինված հարձակման դեպքում:

Իկրամովը և Խոջաևը Բուխարինի ցուցումով դիվերսիոն-վնասարարական մեծ աշխատանք են ծավալած յեղել Ուզբեկստանի ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում, նպատակ ունենալով դժգոհություն առաջացնել բնակչության մեջ և դրանով

իսկ բարենպաստ պայմաններ ստեղծել օտարերկրյա ինտերվենցիայի շրջանում Խորհրդային իշխանության դեմ զինված յելույթներ պատրաստելու համար:

Զելենսկին Ցենտրոսոյուզում և սպառողական կոոպերացիայի սիստեմում կազմակերպել էր վնասարարական խմբեր և նրանց օգնությամբ, բնակչության մեջ դժգոհություն առաջացնելու նպատակով, խճճում էր ապրանքների պլանավորումը, ձգձգում էր դրանց շարժումը դեպի գյուղ, փչացնում ու փտեցնում էր սննդամթերքները, ապակի ու մեխ էր լցնում դրանց մեջ, դիտավորյալ կերպով վիժեցնում էր կոոպերացիայի ստորին առևտրական ցանցի ապահովումն առաջին անհրաժեշտության առարկաներով:

Իվանովը Բուխարինի առաջադրանքով վնասարարական-դիվերսիոն գործունեություն էր կատարում Հյուսիսային յերկրամասի անտառային տնտեսության մեջ:

Զուբարյովը հանդիսանալով աջերի ընդհատակյա կազմակերպության ակտիվ մասնակից, Ռիկովի առաջադրանքով վնասարարությամբ և զբաղվել գյուղատնտեսության մեջ՝ ՌՍՖՍՀ-ի մի շարք մարզերում:

Դիվերսիոն-վնասարարական ակտիվ գործունեության հետ միասին, «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցները գերմանա-



կան, ճապոնական ու լեհական հետախուզությունների առաջադրանքով, Ռիկովի ու Բուխարինի անմիջական ղեկավարությամբ և Իվանովի, Խոջաևի, Իկրամովի, Զուբարյովի, Շարանգովիչի, Գրինկոյի ու Զելենսկու ակտիվ մասնակցությամբ Սիբիրում, Հյուսիսային Կովկասում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Ուզբեկստանում և Խորհրդային Միության այլ վայրերում պատրաստելիս են յեղել բանդիտական-ապստամբական կուլակային կադրեր, ԽՍՀՄ-ի դեմ ինտերվենցիա սկսվելու մոմենտին Կարմիր Բանակի թիկունքում զինված յելույթներ կազմակերպելու համար:

Բանդիտական-ապստամբական կուլակային բազայի ընդարձակման նպատակով, «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարների վորոշմամբ, Բուխարինը կազմակերպչական կապեր էր հաստատել ԽՍՀՄ-ում գործած էսէռական կազմակերպության ընդհատակյա կենտրոնի, ինչպես նաև էսէռների արտասահմանյան կենտրոնի հետ:

Օտարերկրյա հետախուզությունների հետ ուղղակի համաձայնության մեջ մտնելով և ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու առաջադրանքով, «աջ-տրոցկիստական բլոկը» մի շարք տեռորիստական ակտեր էր կազմա-

կերպել ՀամԿ(բ)Կ և Խորհրդային կառավարության ղեկավարների դեմ:

1934 թվին, «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավար մասնակիցներից մեկը — Ռիկովը անձամբ ստեղծել էր տեռորիստական խումբ՝ ընկերներ Ստալինի, Մոլոտովի, Կագանովիչի և Վորոշիլովի նկատմամբ տեռորիստական ակտեր պատրաստելու և ի կատար ածելու համար:

1937 թվի սկզբին Ռոզենհոլցը անձամբ փորձել է տեռորիստական ակտ կատարել ընկեր Ստալինի նկատմամբ, վորի համար բազմիցս ձգտել է ընդունվել նրա կողմից:

Ս. Մ. Կիրովի չարագործ սպանությունը, վոր կատարվեց 1934 թվի դեկտեմբերի 1-ին Լենինգրադի տրոցկիստական-զինովյեվական տեռորիստական կենտրոնի կողմից— ինչպես այժմ հաստատված է սույն գործի նախնական ու դատական քննությամբ— կազմակերպված է եղել «աջ-տրոցկիստական բլոկի» վորոշմամբ, ըստ վորում այդ տեռորիստական ակտի կազմակերպմանն անմիջական մասնակցություն է ունեցել մեղադրյալ Յագոդան, վորը հատուկ ցուցում էր տվել Ներքգործժողկոմատի Լենինգրադի վարչությունում աշխատող



իր համագործակիցներին՝ արգելք չհանդիսանալ այդ վոճրագործության իրականացմանը:

Ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու ցուցումով, «աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարները 1934 թվին վորոշում են ընդունում սպանել պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկուն: Այդ հրեշավոր տեռորիստական ակտը հանձնարարվել էր կազմակերպել Յագոդային, վորը դավադրության նպատակի մասին տեղյակ դարձնելով Մ. Գորկու տնային բժիշկ Լևինին, իսկ այնուհետև բժիշկ Պլետնյովին, նրանց հանձնարարում է բուժման վնասարարական մեթոդների միջոցով Մ. Գորկուն հասցնել մահվան, վորը և կատարվել է այդ հանցավոր գործում բժիշկ Լևինի ղեկավար մասնակցությամբ: Այդ վոճրագործության ակտիվ մասնակցություն են ունեցել «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցներ— Մ. Գորկու նախկին քարտուղար Կրյուչկովը և ՆԳԺԿ-ի նախկին քարտուղար Բուլանովը:

«Աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարների վորոշմամբ, Յագոդան վնասարարական բուժման մեթոդներով կազմակերպում է Միացյալ Պետքաղվարչության նախագահ ընկ. Վ. Ռ. Մենժինսկու և ԽՍՀՄ Ժողո-

կերպել ՀամԿ(բ)Կ և Խորհրդային կառավա-րության ղեկավարների դեմ:

1934 թվին, «աջ- տրոցկիստական բլոկի» ղեկավար մասնակիցներից մեկը — Ռիկովը անձամբ ստեղծել էր տեռորիստական խումբ՝ ընկերներ Ստալինի, Մոլոտովի, Կագանովիչի և Վորոշիլովի նկատմամբ տե-ռորիստական ակտեր պատրաստելու և ի կատար ածելու համար:

1937 թվի ամառային Ռոզենհոլցը ան-ձամբ փորձել է տեռորիստական ակտ կա-տարել ընկեր Ստալինի նկատմամբ, վորի համար բազմիցս ձգտել է ընդունվել նրա կողմից:

Ս. Մ. Կիրովի չարանենգ սպանությու-նը, վոր կատարվեց 1934 թվի դեկտեմբերի 1-ին Լենինգրադի տրոցկիստական-զինով-յևական տեռորիստական կենտրոնի կող-մից— ինչպես այդ հաստատված է սույն գործի նախնական ու դատական քննու-թյամբ— կազմակերպված է յեղել «աջ-տրոցկիստական բլոկի» վորոշմամբ, ընդ վորում այդ տեռորիստական ակտի կազմա-կերպմանն անմիջական մասնակցություն է ունեցել մեղադրյալ Յագոդան, վորը հա-տուկ ցուցում էր տվել Ներքգործժողկոմա-տի Լենինգրադի վարչությունում աշխատող



իր համագործակիցներին՝ արգելք չհանդի-սանալ այդ վոճրագործության իրականաց-մանը:

Ժողովրդի թշնամի Լ. Տրոցկու ցուցու-մով, «աջ- տրոցկիստական բլոկի» ղեկա-վարները 1934 թվին վորոշում են ընդու-նում սպանել պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկուն: Այդ հրեշավոր տեռորիս-տական ակտը հանձնարարվել էր կազմա-կերպել Յագոդային, վորը դավադրության նպատակի մասին տեղյակ դարձնելով Մ. Գորկու տնային բժիշկ Լևինին, իսկ այ-նուհետև բժիշկ Պլետնյովին, նրանց հանձ-նարարում է բուժման վնասարարական մե-թոդների միջոցով Մ. Գորկուն հասցնել մահվան, վորը և կատարվել է այդ հան-ցավոր գործում բժիշկ Լևինի ղեկավար մասնակցությամբ: Այդ վոճրագործության ակտին մասնակցություն են ունեցել «աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցներ— Մ. Գորկու նախկին քարտուղար Կրյուչկովը և ՆԳԺԿ-ի նախկին քարտուղար Բուլանովը:

«Աջ-տրոցկիստական բլոկի» ղեկավարնե-րի վորոշմամբ, Յագոդան վնասարարական բուժման մեթոդներով կազմակերպում է Միության Պետքաղվարչության նախագահ ընկ. Վ. Ռ. Մենժինսկու և ԽՍՀՄ Ժողո-

վրդական Կոմիսարների Խորհրդի նախա-
գահի տեղակալ ընկ. Վ. Վ. Կույբիշևի
սպանությունը, ըստ վորում ընկ. Կույբի-
շևի նկատմամբ տեռորիստական ակտի ի-
րականացմանն անմիջական մասնակցու-
թյուն են ունեցել Լևինը և Կույբիշևի
նախկին քարտուղար, 1928 թվից աջերի
ընդհատակյա կազմակերպության մասնա-
կից Մաքսիմով—Դիկովսկին, իսկ Մենժինս-
կու նկատմամբ տեռորիստական ակտի իրա-
կանացմանն անմիջական մասնակցություն
են ունեցել Բուլանովը և Յագոդայի ու Լե-
վինի կողմից դավադրական խմբի մեջ ներ-
գրավված բժիշկ Կազակովը:

Բացի դրանից, հաստատված է, վոր Լե-
վինն ու Կրյուչկովը, Յագոդայի ուղղակի
առաջադրանքով, բուժման վնասարարական
մեթոդներով մեռցրել են Ա. Մ. Գորկու
վորդուն— Մ. Ա. Պեշկովին:

1936 թվի սեպտեմբերին ընկեր Ն. Ի.
Յեժովի՝ ԽՍՀՄ Ներքին գործերի ժողովրդա-
կան կոմիսար նշանակվելու կապակցու-
թյամբ, «աջ-տրոցկիստական բլոկը» վա-
խենալով լիակատար մերկացումից և հա-
կախորհրդային կազմերի ջախջախումից,
Յագոդային հանձնարարում է տեռորիստա-



կան ակտ կատարել ընկ. Ն. Ի. Յեժովի
նկատմամբ:

Կատարելով այդ չարանենգ հանձնարա-
րությունը, Յագոդան Բուլանովի անմիջա-
կան մասնակցությամբ 1936 թվի աշնանը
մահափորձ է կատարում ընկ. Ն. Ի. Յեժո-
վի կյանքի դեմ, հատկապես այդ նպատա-
կի համար պատրաստված թույնով նրա
օրգանիզմն աստիճանաբար թունավորելու
միջոցով, վորի հետևանքով զգալի վնաս է
հասցվում Ն. Ի. Յեժովի առողջությանը:

Բացի դրանից, հաստատված է, վոր Բու-
խարինն աջերի հակախորհրդային կազմա-
կերպության կենտրոնի վորոշմամբ դեռ
1930 թվին համաձայնության էր յեկել ընկ.
Վոլոդարսկու սպանությունը և 1918 թվին
Վ. Ի. Լենինի կյանքի դեմ կատարված մա-
հափորձը կազմակերպող բոևիկ-եսեր Սեմ-
յոնովի հետ այն մասին, վորպեսզի նա
ստեղծեր տեռորիստական խմբեր՝ ՀամԿ(բ)Կ
և Խորհրդային կառավարության ղեկավար-
ների դեմ տեռորիստական ակտեր պատ-
րաստելու և ի կատար ածելու համար:

Նաև հաստատված է, վոր 1918 թվին
Բուխարինն ու նրա գլխավորած «ձախ» կո-
մունիստների խումբը, Տրոցկու և «ձախ»
եսերների հետ միասին դավադրություն ե-

յին կազմակերպել Խորհրդային կառավարության դեմ։

Բուխարինը և դավադրության նրա հանցակիցները նպատակ են ունեցել վիժեցնել Բրեստի դաշնագիրը, տապալել Խորհրդային կառավարությունը, ձերբակալել և սպանել Վ. Ի. Լենինին, Ի. Վ. Ստալինին ու Յա. Մ. Սվերդլովին և կազմել նոր կառավարություն՝ բուխարինականներից, տրոցկիստներից և «ձախ» էսէռներից։

Կատարելով դավադրության պլանը, «ձախ» էսէռները 1918 թվի հուլիսին Բուխարինի գիտությամբ ու համաձայնությամբ, Մոսկվայում խռովություն են բարձրացնում Խորհրդային կառավարությունը տապալելու նպատակով, ըստ որում հաստատված է, որ 1918 թվի օգոստոսի 30-ին, էսէռուհի Կապլանի կողմից Վ. Ի. Լենինի կյանքի դեմ կատարված մահափորձը հանդիսացել է Բուխարինի գլխավորած «ձախ» կոմունիստների և նրանց հանցակիցներ «ձախ» ու աջ էսէռների հանցավոր դիտավորությունների արդյունքը։

Նախնական և դատական քննությամբ հաստատված է, որ նույն գործով մեղա-



դրյալներ Զելենսկին, Իվանովը և Զուբարյովը բանվոր դասակարգի հեղափոխական շարժման դեմ պայքարելու ուղին մտել են դեռ ցարիզմի տարիներին։

Զելենսկին եղել է Սամարայի ժանդարմական վարչության գործակալ-պրովոկատոր 1911 թվից մինչև 1913 թիվը։

Իվանովը եղել է պահնորդական բաժնի և ժանդարմական վարչության գործակալ-պրովոկատոր՝ Մոսկվայում և այլ քաղաքներում 1911 թվից մինչև 1916 թիվը։

Զուբարյովը 1908 թվին Կոտելնիչի քաղաքում ներգրավված լինելով գործակալ-պրովոկատորների թվում՝ պրովոկատորական գործունեությամբ զբաղվել է մինչև 1917 թիվը։

Այսպիսով, ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի Զինվորական Կոլեգիան հաստատեց 1. Ն. Ի. Բուխարինի, 2. Ա. Ի. Ռիկովի, 3. Գ. Գ. Յագոդայի, 4. Ն. Ն. Կրեստինսկու, 5. Խ. Գ. Ռակովսկու, 6. Ա. Պ. Ռոզենգոլցի, 7. Վ. Ի. Իվանովի, 8. Մ. Ա. Չեռնովի, 9. Գ. Ֆ. Գրինկոյի, 10. Ի. Ա. Զելենսկու, 11. Ս. Ա. Բեսսոնովի, 12. Ա. Իկրամովի, 13. Ֆ. Խոջաևի, 14. Վ. Ֆ. Շարանգովիչի, 15. Պ. Տ. Զուբարյովի, 16. Պ. Պ. Բուլանովի, 17. Լ. Գ.

Լևինի, 18. Դ. Դ. Պլետնյովի, 19, Ի. Ն. Կազակովի, 20. Վ. Ա. Մաքսիմով-Դիկովսկու և 21. Պ. Պ. Կրյուչկովի հանցագործությունն այն բանում, որ նրանք հանդիսանալով «աջ-տրոցկիստական բլոկ» անունը կրող՝ օտարերկրյա պետությունների հետախուզությունների ուղղակի առաջադրանքներով գործող դավադրական խմբի ակտիվ մասնակիցներ, կատարել են դավաճանական-լրտեսական, դիվերսիոն-վնասարարական, տեռորիստական գործունեություն, հրահրելով այդ պետությունների ռազմական հարձակումը ԽՍՀՄ-ի վրա՝ Խորհրդային Միության պարտության ու մասնատման և Ուկրաինան, Բելոռուսիան, Միջին-Ասիական հանրապետությունները, Վրաստանը, Հայաստանը, Ադրբեջանը, Պրիմորյեն՝ Հեռավոր-Արևելքում— ԽՍՀՄ-ի նկատմամբ թշնամի օտարերկրյա պետությունների օգտին ԽՍՀՄ-ից անջատելու նպատակով, իրենց վերջնական նպատակ ունենալով ԽՍՀՄ-ում գոյություն ունեցող սոցիալիստական հասարակական ու պետական կարգի տապալումը և ԽՍՀՄ-ում կապիտալիզմի ու բուրժուազիայի իշխանության վերականգնումը, այսինքն՝ պետական ամենածանր հանցագործություններ



կատարելու մեջ, որոնք նախատեսված են ՌԽՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58—1 Ա, 58—2, 58—7, 58—8, 58—9 և 58—11 հոդվածներով, իսկ Իվանովը, Զելենսկին և Զուբարյովը, բացի դրանցից այնպիսի հանցագործություններ կատարելու մեջ, որոնք նախատեսված են ՌԽՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58—13 հոդվածով:

Վերոհիշյալի հիման վրա, և ղեկավարվելով ՌԽՖՍՀ Քրեական— Դատավարական Օրենսգրքի 319 ու 320 հոդվածներով, ԽՍՀ Միության Գերագույն Դատարանի Զինվորական Կոլեգիան՝

1. Նիկոլայ Իվանովիչ Բուխարինին,
2. Ալեքսեյ Իվանովիչ Ռիկովին,
3. Գենրիխ Նիկոլաևիչ Յագոդային,
4. Նիկոլայ Նիկոլայևիչ Կրեստինսկուն,
5. Արկադի Պավլովիչ Ռոզենհոլցին,
6. Վլադիմիր Իվանովիչ Իվանովին,
7. Միխայիլ Ալեքսանդրովիչ Չերնովին,
8. Գրիգորի Ֆյոդորովիչ Գրինկոյին,
9. Իսաակ Աբրամովիչ Զելենսկուն,
10. Ակմալ Իկրամովին,
11. Ֆայզուլլա Խոջայեվին,

12. Վասիլի Յոսիֆի Շարանգովիչին,
13. Պրոկոպի Տիմոֆեյեվիչ Զուբարյովին,
14. Պավել Պետրովիչ Բուլանովին,
15. Լեվ Գրիգորյեվիչ Լևինին,
16. Իգնատի Նիկոլայեվիչ Կազակովին,
17. Վենիամին Ադամովիչ (Աբրամովիչ) Մաքսիմով—Դիկովսկուն և
18. Պյոտր Պետրովիչ Կրյուչկովին— քրեական պատժի բարձրագույն չափին— ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԹՅԱՆ, անձնապես նրանց պատկանող ամբողջ գույքի բռնագրավմամբ:

19. Դմիտրի Դմիտրիևիչ Պլետնյովին որպես ընկ. ընկ. Կույբիշևի և Ա. Մ. Գորկու մահացմանն անմիջական ակտիվ մասնակցություն չունեցողի, թեև աջակցել է այդ հանցագործությանը — բանտարկության՝ քսան հինգ տարի ժամանակով, բանտարկությունը կրելուց հետո հինգ տարով զրկելով քաղաքական իրավունքներից, անձնապես նրան պատկանող ամբողջ գույքի բռնագրավմամբ:

20. Քրիստիան Գեորգիևիչ Ռակովսկուն և

21. Սերգեյ Ալեքսեևիչ Բեսսոնովին, որպես տեռորիստական ու դիվերսիոն— վնասարարական գործողությունների կազ-



մակերպմանն ուղղակի մասնակցություն չունեցողների— բանտարկության՝

Ռակովսկուն—քսան տարի ժամանակով և

Բեսսոնովին— տասնհինգ տարի ժամանակով՝

բանտարկությունը կրելուց հետո քաղաքական իրավունքներից զրկելով յուրաքանչյուրին հինգ տարով, անձնապես նրանց պատկանող ամբողջ գույքի բռնագրավմամբ:

Պլետնյովի, Ռակովսկու և Բեսսոնովի բանտարկության ժամկետը հաշվել նրանց ձերբակալության օրվանից:

Ն Ա Խ Ա Գ Ա Հ Ո Ղ— ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՅԻ ՆԱԽԱԳԱՀ՝ ԲԱՆԱԿԻ ԶԻՆԻՐԱՎԱԲԱՆ՝

**Վ. ՈՒԼՐԻԽ**

Ա Ն Դ Ա Մ Ն Ե Ր— ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՅԻ ՆԱԽԱԳԱՀԻ ՏԵՂԱԿԱԼ՝ ԿՈՐՊՈՒՍԻ ԶԻՆԻՐԱՎԱԲԱՆ՝

**Ի. ՄԱՏՈՒԼԵՎԻՉ**

ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՅԻ ԱՆԴԱՄ՝ ԴԻՎԻԶԻԱՅԻ ԶԻՆԻՐԱՎԱԲԱՆ՝

**Բ. ԻՅԵՎԼԵՎ**

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին: